## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրատարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրության ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Лениинян угиов» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՂԱԶԱԽՍՏԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ

*Թանկագին ընկերնե՛ր։ Նախ և առաջ թույլ տվեք ձեզ, հանրապետության բոլոր կոմունիստներին ու աշխատավորներին հաղորդել մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի ողջույնը և բարեմաղթությունները ձեր աշխատանքում։*

*Ղազախստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեին, անձամբ ընկեր Կունաևին ես շնորհակալություն եմ հայտնում ձեր հանրապետության կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությանը մասնակցելու հրավերի համար։*

*Ընկերնե՛ր, այսօր Ղազախստանը Սովետական Միության հիմնական շտեմարաններից մեկն է, երկրի խոշորագույն անասնապահական բազան։ Այսօր Ղազախստանը հարյուրավոր ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ ունեցող հանրապետություն է, որոնք մեծ ավանդ են ներդնում երկրի տնտեսական զարգացման մեջ։ Ղազախստանն ունի հազարավոր գիտնականներ և կուլտուրայի գործիչներ, որոնց ստեղծագործությունը արժանի ճանաչում է գտնում բովանդակ սովետական ժողովրդի կողմից։*

*Այս դահլիճում հավաքված են նրանք, ում գործունեությունից, ում աշխատանքից են զգալի չափով կախված հանրապետության զարգացման տեմպերն ու բնույթը։ Ուստի այստեղ կայանալիք խոսակցությունը կարող է լինել միայն սկզբունքային, իրոք, կուսակցական խոսակցություն։*

*Մեր ամբողջ կուսակցության ու ժողովրդի գործունեության մեջ և, բնականաբար, Ղազախստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների գործունեության մեջ այժմ գլխավորը XXV համագումարի որոշումների կատարումն է, երկրի ժողովրդական տնտեսության զարգացման մինչև 1980 թվականի հիմնական ուղղությունների կենսագործումը։*

*Այն վերելքը, որ մենք պետք է հաղթահարենք մոտակա հինգ տարում, ես կասեի, բավականաչափ զառիվեր է։ Եվ մեծ գոհունակությամբ կարելի է ասել, որ, ամբողջությամբ վերցրած, մենք այն սկսել ենք լավ ռիթմով։*

*Յոթ ամսում արդյունաբերական արտադրության աճը երկրում կազմել է մոտավորապես 5 տոկոս՝ պլանով նախատեսված 4,3 տոկոսի դիմաց։ Պլանից ավելի իրացվել է ավելի քան 4 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։*

*Երկիրն այժմ ստանում է պլանով նախատեսվածից զգալիորեն շատ վառելիք, մետաղ, էլեկտրաէներգիա, քիմիական ու մեքենաշինական արդյունաբերության արտադրանք։*

*Վատ չեն նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բնագավառում ձեռք բերված արդյունքները։ Ինչպես հայտնի է, դրանց աճը ըստ 1976 թվականի պլանի սահմանված է 2,7 տոկոսի չափով։*

*Այդպիսի ապրանքների արտադրությունը, ամբողջությամբ վերցված, յոթ*

մթերքի վիթխարի նշանակությունը սոցիալիստական էկոնոմիկայի կառուցման, քաղաքական ու տնտեսական խնդիրների կատարման գործում։ Նա ընդգծել է, որ «տնտեսության իսկական հիմքը պարենավորման ֆոնդն է... առանց այդպիսի ֆոնդի սոցիալիստական քաղաքականությունը միայն ցանկություն կմնա» (Երկեր, հ. 31, էջ 642—643)։

Լենինի այս խոսքերը մենք՝ կոմունիստներս, միշտ պիտի հիշենք։ Պետք է մշտապես հենվել կուտակված փորձի վրա, դասեր առնել անցած տարիներից։

Այնինչ երբեմն այն տպավորությունն է ստեղծվում, որ եղանակի պայմանների տեսակետից աննպաստ իրադրությունը, օրինակ, բերքահավաքի շրջանում, ոմանց հանկարծակիի է բերում։ Կարծես թե մեր կադրերն առաջին անգամ են հանդիպում դրան։ Հացահատիկը պառկել է՝ չկան ցողունը բարձրացնող մեքենաներ, արտից խոնավ հացահատիկ է բերվում՝ չեն բավականացնում պահպանման ծածկերը և չորացման ագրեգատները։

Ճակատայինները գիտեն, երբ հարձակում է պատրաստվում, նկատի են առնվում հնարավոր տարբերակներից ամենադժվարինները։ Այդպես պիտի վարվել նաև գյուղատնտեսության մեջ, վաղօրոք պատրաստվել բնության ամեն տեսակ քմայքներին։ Ես այս մասին խոսում եմ ոչ թե նրա համար, որ սահմանափակվեմ փաստերը արձանագրելով։ Այս դահլիճում գտնվող յուրաքանչյուրը հավանաբար զգում է, որ կարելի է աշխատել ավելի լավ, կարելի է ավելի լավ ղեկավարել տնտեսությունը։

Կուսակցության XXV համագումարում մենք հայտարարեցինք, որ հացահատիկի արտադրությունը մեր աշխատանքի հարվածային տեղամասն է, որտեղ հարկավոր է կենտրոնացնել առավելագույն ջանքեր ու ռեսուրսներ և որի վրա հարկավոր է սևեռել կուսակցական կազմակերպությունների, գիտնականների ու մասնագետների, կոլտնտեսականների, սովխոզների աշխատողների, մելիորատորների ուշադրությունը, գյուղին տեխնիկա, պարարտանյութեր, այլ միջոցներ մատակարարող արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների ուշադրությունը։

Այս հարվածային տեղամասում մեր աշխատանքի արդյունքները քաղաքական, իրոք, համապետական մեծ նշանակություն ունեն։ Հունձը հանրապետական կուսակցական կազմակերպության լուրջ քննությունն է, որ նա տալիս է կուսակցությանն ու ժողովրդին։

Երկիրը Ղազախստանին մեծ օգնություն է ցույց տվել։ Այստեղ է ուղարկվել 55 հազար բանակային բեռնատար մեքենա։ Արդյունաբերությունը ժամկետից շուտ մատակարարեց հազարավոր բեռնատարներ, հացահատիկի կոմբայններ և այլ տեխնիկա։ Մյուս հանրապետություններից բերքահավաքին կմասնակցեն մոտ 12 հազար կոմբայնավարներ, պրոֆտեխնիկական ուսումնարանների 13 հազար աշակերտներ, հացահատիկ չորացնող ավելի քան երկու հազար մարդիկ, լաբորանտներ և որակյալ այլ բանվորներ, մի խոսքով՝ ինչպես ասում են, օգնել ենք, ինչով կարողացել ենք։

Այժմ խնդիրն այն է, որ լավ և արդյունավետ օգտագործվի այդ մեծ օգնությունը։ Հեշտ չի լինի նրանց գործը, ովքեր այժմ գտնվում են արտում։ Նրանք հաճախ աշխատում են գիշեր ու ցերեկ, և եղանակն էլ նպաստավոր չէ։ Բայց, այնուամենայնիվ, մարդիկ աշխատում են անձնվիրությամբ, հոգով ու սրտով, հերոսաբար։ Այս ամենը վստահություն է ստեղծում, որ հանրապետության աշխատավորները կշահեն բերքի համար մղվող ճակատամարտը։

Ղազախստանի հողագործները անցած հնգամյակում տարեկան պետության շտեմարաններ լցրեցին միջին հաշվով 750 միլիոն փութ հացահատիկ։ Երկու անգամ՝ 1972 և 1973 թվականներին, հանրապետությունը գերազանցեց մեկ միլիարդ փթի բնագիծը։

Ձեզ մոտ գալուց հետո ես այսօր խորհրդակցեցի ընկերներ Կունաևի, Աշիմովի հետ, խոսեցի մարզկոմների շատ քարտուղարների հետ և համոզվեցի. Ղազախստանը այս տարի ևս, տասներորդ հնգամյակի առաջին տարում, կուրախացնի հայրենիքին՝ պետությանը կվաճառի առնվազն մեկ միլիարդ հարյուր միլիոն փութ հացահատիկ։ Ովքեր են, ընկերներ, պաշտպանում այս առաջարկությունները։ (Բացականչություններ դահլիճից. «Բոլորը»)։ Ձեզ հետ միասին ես էլ եմ ուրախանում դրա համար, ընկերներ։



Ղազախստանի միլիարդը վկայում է բանվորների, կոլտնտեսականների ու մտավորականության անձնվեր աշխատանքի մասին, հանրապետության կոմունիստների՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական և հուսալի ջոկատի, ավանգարդային դերի մասին։

Ձեռք բերված արդյունքների մեջ ասես ամփոփվում է գյուղում կուսակցության վարած այժմյան քաղաքականությունը։ Դրանցում ակնբախորեն երևում է այդ քաղաքականության յուրաքանչյուր օղակի՝ մելիորացման, քիմիացման, մեքենայացման, արտադրությունը միջտնտեսական ու ագրոարդյունաբերական կոոպերացման հիման վրա մասնագիտացնելու և համակենտրոնացնելու դերն ու փոխհատուցումը։ Այս մասին համոզիչ կերպով վկայում են նաև ձեր հանրապետության վերաբերյալ տվյալները։

Տասը տարում շրջանառության մեջ է դրվել 571 հազար հեկտար ոռոգելի հողատարածություն և ջրարբիացվել է 54 միլիոն հեկտար արոտավայր։ Թեպետև հանրապետությունում ոռոգելի հողատարածությունն առայժմ մեծ չէ, կազմում է վարելահողերի 4 տոկոսը, և չի կարելի ասել, որ դրանցից բարձր բերք են ստանում, բայց դրանք արդեն տալիս են հողագործության ամբողջ արտադրանքի մեկ հինգերորդ մասը։

Վերջերս մենք լավ որոշում ընդունեցինք տասներորդ հնգամյակում մելիորացման պլանի մասին և ոռոգելի ու չորացված հողերի օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին։ Նրանում, կազմակերպական ու տեխնիկական միջոցառումներին զուգընթաց, նշված է, թե որքան և ինչպիսի արտադրանք պետք է ստանալ, այսինքն՝ ծրագիրը նպատակային բնույթ է կրում։ Խնդիր է դրված մինչև հնգամյակի վերջը մելիորատիվ հողերում ապահովել հողագործության մթերքների առնվազն մեկ երրորդի արտադրությունը։ Այդպիսին է այժմ մեր խնդիրների մասշտաբը։

Ղազախստանի դաշտերում աշխատում են Կ—700 և Կ—701 տիպի հազարավոր հզոր տրակտորներ, նորագույն կոմբայններ և ժամանակակից այլ տեխնիկա։ Մեքենայացման մակարդակը այսուհետև էլ կաճի։ Ղազախստանի տարածություններում էներգահարուստ տեխնիկային արագորեն անցնելը գյուղատնտեսության արտադրողականության վերելքի գլխավոր նախադրյալներից մեկն է։

Վերջին երկու հնգամյակներում Ղազախստանում մեկուկես-երկուսուկես անգամ աճել է հանքային պարարտանյութերի օգտագործումը բամբակի, շաքարի ճակնդեղի, բրնձի, կարտոֆիլի դաշտերում։

Ցավոք, մենք Ղազախստանին առայժմ անհրաժեշտ քանակությամբ հանքային պարարտանյութեր չենք տալիս հացահատիկային կուլտուրաներով զբաղեցված հսկայական հողատարածությունների համար։ Սա այն կարևոր հարցերից մեկն է, որ մենք վերջ ի վերջո պետք է լուծենք։

Մեծ նշանակություն ունի հողերի պաշտպանությունը էրոզիայից, հատկապես՝ երկրի հարավային ու արևելյան շրջաններում։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն օրերս որոշում ընդունեց այդ հարցի առթիվ։ Մենք որոնել և գտել ենք լրացուցիչ ռեսուրսներ, որոնք հնարավորություն են ընձեռում արտադրել կրկնակի շատ հակաէրոզիական տեխնիկա, քան իններորդ հնգամյակում և գրեթե մեկ երրորդով ավելի, քան որոշված է հիմնական ուղղություններով։ Իսկ սա արդեն մեծ գործ է։

Հանրապետությունում, ինչպես որ ամբողջ երկրում, կատարելագործվում են կոլտնտեսային և սովխոզային արտադրության կազմակերպական ձևերը։ Միջտնտեսային հիման վրա ստեղծվում են անասունների բտման ու գիրացման ձեռնարկություններ ու միավորումներ։ Այս առաջադիմական պրոցեսը ավելի ու ավելի է թափանցում գյուղատնտեսության նաև մյուս ճյուղերը։

Այսպիսով, փաստորեն արդեն լավ հիմք է դրված գյուղատնտեսության մեջ նոր բնագծեր նվաճելու համար։

Անդրադառնալով հացահատիկի արտադրության ավելացման անհրաժեշտության հարցին, կկամենայի նշել, որ երկրին հարկավոր է ոչ թե առհասա-

րակ հացահատիկ, այլ լավ որակի և լայն տեսականու հացահատիկ: Ղազախստանի համար դա առանձնահատուկ նշանակություն ունի: Անհրաժեշտ է ձգտել այն բանին, որ ցորենի մթերումների ծավալի առնվազն կեսը կազմեն առավել ուժեղ և պինդ սորտերը: Խոսքը նաև վերաբերում է հնդկացորենի, կորեկի, բրնձի, եգիպտացորենի արտադրության ավելացմանը:

Ի դեպ, ոռոգելի հողերում եգիպտացորենի արտադրության մասին: Ղազախստանի կոլտնտեսություններն ու սովխոզները դեռ մի քանի տարի առաջ հեկտարից ստանում էին 10—12 ցենտներով ավելի, քան Ուզբեկստանում: Անցած տարի Ուզբեկստանում աճեցրին հեկտարից 54,2 ցենտներ եգիպտացորեն, այսինքն՝ 18 ցենտներով ավելի, քան ձեր հանրապետությունում: Կարծում եմ, որ սրանից դուք պետք է պատշաճ հետևություն անեք: Ես վստահ եմ, որ դուք կարող եք դա շտկել: (Ընկ. Կունաև. «Դա կարելի է շտկել»):

Իհարկե, մենք ռեալիստներ ենք և հասկանում ենք, որ որպեսզի մեր գյուղատնտեսությունը նվազ խոցելի դառնա անբարենպաստ եղանակի գործոնների նկատմամբ, առաջիկայում պետք է մեծ ու քրտնաջան աշխատանք տարվի: Եվ գյուղին որքան շատ կապիտալ ներդրումներ, տեխնիկա, պարարտանյութեր և այլ միջոցներ են հատկացվում, այնքան սրվում է դրանց արդյունավետ օգտագործման, բարձր փոխհատուցման համար ամենուրեք պայքար մղելու խնդիրը:

Կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն հոգատարությունը այն բանի նկատմամբ, որ պետության հատկացրած միջոցներն ու նյութական ռեսուրսները յուրաքանչյուր կոլտնտեսությունում, սովխոզում, շրջանում ու մարզում օգտագործվեն որքան կարելի է լավ:

Ինձ իրազեկ են պահել, որ վերջին տասը տարում Ղազախստանի կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատանքի ֆոնդազինվածությունը բարձրացել է 2,2 անգամ: Միևնույն ժամանակ աշխատանքի արտադրողականությունը դանդաղ է աճում:

Մենք գիտենք, որ դա կապված էր նաև օբյեկտիվ պատճառների հետ, բայց չի կարելի միայն դրանով բացատրել: Հարկավոր է մանրակրկիտ կերպով խորամուխ լինել այդ հարցին, բարձրացնել գյուղատնտեսական մարմինների պատասխանատվությունը, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների պատասխանատվությունը, ուժեղացնել կուսակցական կազմակերպությունների վերահսկողությունը և ազդեցությունը:

Խստագույն տնտեսումը և խնայողությունը, յուրաքանչյուր մեքենայից, մելիորացված հողերի յուրաքանչյուր հեկտարից, յուրաքանչյուր տոննա պարարտանյութից բարձր փոխհատուցման ապահովումը մնում են որպես գյուղատնտեսության հաջող զարգացման կարևորագույն պայմանը: Այս ամենը, ընկերնե՛ր, խորապես կուսակցական խնդիրներ են:

Ղազախստանի համար որպես սուր պրոբլեմ է մնում մեխանիզատորների և մյուս մասսայական պրոֆեսիաների աշխատողների պակասը: Տրակտորներով, կոմբայններով, բեռնատար ավտոմոբիլներով, բարդ սարքավորումներով կոլտնտեսությունների ու սովխոզների զինումը զգալիորեն ավելի արագ է ընթանում, քան համապատասխան կադրերի պատրաստումը:

Օրինակ, տրակտորների մատակարարումը վերջին հինգ տարում աճել է 20 տոկոսով, կոմբայններինը՝ մեկուկես անգամ, բեռնատար ավտոմեքենաներինը՝ գրեթե երկու անգամ, իսկ տրակտորիստների, կոմբայնավարների և ավտովարորդների թիվը ավելացել է ընդամենը 14 տոկոսով: Կան այնպիսի սովխոզներ ու կոլտնտեսություններ, որտեղ մեքենատրակտորային համակազմը կոմպլեկտավորված չէ նույնիսկ մեկ հերթափոխով աշխատելու համար: Այս ամենը թանկ է նստում թե՛ հանրապետության և թե՛ ամբողջ երկրի վրա:

Ուստի ես հարկադրված եմ նորից ու նորից կրկնելու գյուղական մեխանիզատորական կադրերի պատրաստումը և, որ գլխավորն է, նրանց ամրացումը կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական կազմակերպությունների գործունեության կարևոր տեղամասն է: Պատանիներին ու աղջիկներին ժամանակակից տեխնիկայով աշխատելու գործում ներգրավելու համար շատ բան կարող է և պետք է անի մեր փառապանծ կոմերիտմիությունը:



Մյուս պրոբլեմը, որի վրա ես կկամենայի կանգ առնել, հանրապետությունում անասնապահության առավել արագ զարգացումն է: Չի կարելի ասել, թե այդ տեղամասում դրական տեղաշարժեր չկան: Այդպիսիք կան և բավականաչափ զգալի են: Մենք դա խոստովանում ենք, դա խոստովանում է երկիրը: Օրինակ, վերջին հինգ տարում մսի միջին տարեկան արտադրությունը աճել է 21 տոկոսով:

Բայց անասնապահության պրոբլեմը ըստ երևույթին պետք է ավելի խոր քննել: Ես նախ և առաջ նկատի ունեմ այդ ճյուղի զարգացման անկայունությունը, գլխաքանակի և մթերատվության անկումների առկայությունը, այսինքն՝ այնպիսի երևույթներ, որոնք ուղեկցում են էքստենսիվ անասնապահությանը:

Անասնապահության կերի բազայի հիմքում մինչև օրս ընկած են բնական կերահանդակներն իրենց խիստ ցածր արդյունավետությամբ: Բավական է ասել, որ այդ կերահանդակներից հաճախ ստանում են հեկտարից 3—4 ցենտներ խոտ: Եթե այս վիճակը պահպանվի, ապա հանրապետության անասնապահությունը կդոփի տեղում, դժվար կլինի նրան տեղից շարժել:

Անհրաժեշտ է ընդհուպ և լրջորեն զբաղվել բնական կերահանդակների բարելավումով, յուրացնել Իրտիշի և մյուս գետերի հեղեղատները, ընդարձակել լիմանային խոտհարքները, մի խոսքով՝ ձեռնամուխ լինել իրոք կուլտուրական մարգագետինների ու արոտավայրերի ստեղծմանը:

Արոտավայրերի ոռոգման և ջրարբիացման մեծ ռեզերվ են ստորերկրյա ջրերը: Ինչպես հաղորդում են գիտնականները, դրանց միայն ուսումնասիրված պաշարները բավական են, որ Ղազախստանում ոռոգվի առնվազն 5 միլիոն և ջրարբիացվի մոտավորապես 150 միլիոն հեկտար գյուղատնտեսական հողատարածություն: Ըստ երևույթին հասել է ժամանակը, որ ստորերկրյա ջրերի օգտագործման մեծ հնարավորությունների վերաբերյալ խոսքերից անցնեն գործի, մշակեն ռեալ նպատակային ծրագիր, գործնական լավ հիմքի վրա դնեն այդ կարևորագույն պրոբլեմի լուծումը:

Բացի ընդարձակ բնական մարգագետինների, արոտավայրերի արմատական բարելավման միջոցառումներից, որոնք տալիս են ամենաէժան կերը, հարկավոր է կարգուկանոն հաստատել նաև դաշտային կերարտադրության ասպարեզում:

Խոսքը այն մասին է, որ վարելահողերի այն 20 տոկոսը, որ ձեր հանրապետությունում զբաղեցված է բազմամյա ու միամյա խոտաբույսերով, հեկտարից տա 8—10 ցենտներ խոտ, իսկ երբեմն էլ՝ 2—3 անգամ շատ: Այդ դեպքում վարելահողերում դրանց աճեցումը արդարացված կլինի:

Երկու խոսք նաև մի այնպիսի պրոբլեմի մասին, ինչպիսին է սպիտակուցային կերը: Այս պրոբլեմի լուծման ուղիները տարբեր են: Ձեր պայմաններում մեծ նշանակություն ունի առվույտի աճեցումը: Բայց պետք է ուշադրություն դարձնենք նաև սոյայի արտադրության վրա: Սոյան Ղազախստանում կարող է աճել և պետք է աճի: Իսկ դա հիանալի սպիտակուցային կեր է: (Բացականչություն դահլիճից. «Ճիշտ է»):

Ինձ պատմեցին, որ Ալմա-Աթայի և Տալդի-Կուրգանի մարզերի առաջավոր տնտեսությունները հեկտարից ստանում են 20 և ավելի ցենտներ լոբազգի սոյա: Սոյայի արտադրության հարցերը մենք ըստ երևույթին պետք է լուծենք նույնքան հիմնավոր ու նպատակասլաց կերպով, ինչպես լուծում էինք բրնձի պրոբլեմը:

Խոսելով Ղազախստանի անասնապահության պրոբլեմների մասին, չի կարելի ուշադրություն չառնել նրա մի այնպիսի ճյուղը, ինչպիսին է մսատու անասնապահությունը: Տակավին քառասնական թվականներին հանրապետությունում ստեղծվեց ղազախական ճերմակագլուխ անասունի հիանալի ցեղը և այժմ այստեղ է կենտրոնացված մսատու անասունների ամբողջ գլխաքանակի գրեթե կեսը, կա տոհմաբուծական և ապրանքային մսատու տնտեսությունների և ֆերմաների լայն ցանց: Սա պատկառելի բազա է:

Ինչպես ինձ զեկուցեցին, շատ սովխոզներ լավ արդյունքների են հասնում այդ ճյուղում: Ռացիոնալ կերպով զուգորդելով անասունների գիրացումը արո-

տավայրերում և մատղաշի ինտենսիվ բտումը մասնագիտացված ձեռնարկություններում ու ֆերմաներում, նրանք մատաղ անասունները հանձնում են 450—500 կիլոգրամ և ավելի միջին քաշով, ստանում են մեծ եկամուտներ:

Բայց այդ ճյուղի վերելքի ռեզերվները դեռևս հեռու են լրիվ օգտագործվելուց: Ըստ երևույթին, ընկերնե՛ր, պետք է ուժեղացնել ուշադրությունը մատաղ անասնապահության ինտենսիվացման և հետագա վերելքի նկատմամբ: Ի դեպ, սա վերաբերում է նաև մյուս հանրապետություններին: Ընթացիկ հնգամյակում մենք պետք է հիմնականում ավարտենք անցումը խոշոր եղջերավոր անասունների աճեցման ու բտման արդյունաբերական հիմքին, դրա համար օգտագործելով միջտնտեսային կոոպերացման բազայի վրա արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման մեծ հնարավորությունները:

Կերի լավ պաշար ստեղծելու և, հետևաբար, մսի, կաթի, բրդի ու ձվի արտադրությունը նախատեսվածից ավելի մեծ չափով ավելացնելու համար այս տարի դուք լավ պայմաններ ունեք: Հանրապետությունում արդեն կուտակված է անցյալ տարվանից 3,5 միլիոն տոննայով ավելի կոշտ կեր: Ես կուզենայի հատկապես նշել Կուստանայի, Ցելինոգրադի, Չիմքենդի, Կոկչետավի և մի քանի այլ մարզերի աշխատավորների նվաճումները, որոնք առաջադրել են և հաջողությամբ լուծում են այս տարի անասնապահական ֆերմաները մեկուկես-երկու տարվա կերի պաշարով ապահովելու խնդիրը:

Սա, ընկերնե՛ր, համապետական մեծ գործ է. եթե մեր երկրում ամենուրեք ունենանք կոշտ և հյութալի կերերի թեկուզ 20—25 տոկոս փոխանցվող ապահովագրական պաշար, ապա ավելի վստահորեն կզարգանա անասնապահությունը, մենք կկարողանանք այն զերծ պահել այն վնասից, որ առանձին տարիների պատճառում են տարերային աղետները և որ, բնականաբար, ազդում է բնակչությանը մսի, կաթի և այլ մթերքներ մատակարարելու վրա:

Նաև հարկավոր է արագորեն հաղթահարել հանրապետության ետ մնալը կարտոֆիլաբուծության ու բանջարաբուծության ասպարեզում, հոգ տանել այգեգործության ու խաղողագործության հետագա զարգացման մասին: Դրա համար պայմաններ կան, և անհրաժեշտ է դրանք առավել լրիվ օգտագործել: Ձեր արդյունաբերական կենտրոնների աշխատավորները միայն շնորհակալություն կհայտնեն ձեզ:

Շատ կարևոր է եկող տարվա բարձր բերքի համար լավ հիմք դնելը:

Այս կապակցությամբ կուզենայի արծարծել աշնանացանի հարցը: Այն վերաբերում է ոչ միայն ձեր հանրապետությանը, այլև երկրի շատ շրջանների:

Դուք գիտեք, որ վերջերս Կենտրոնական կոմիտեն ընդունեց մի որոշում, որի էությունը հանգում է աշնանացան ցորենի և տարեկանի ցանքատարածությունների ընդարձակմանը:

Թեպետև գարնանը ցանքատարածությունների մի մասում մենք ստիպված եղանք գարնանացան կատարել, բայց միևնույն է, աշնանացանը մյուս ցանքսերին գերազանցում է ինչպես բերքատվությամբ, այնպես էլ հատիկի որակով: Կարծում եմ, որ տեղերում այն ընկերները, ովքեր պատասխանատու են գյուղատնտեսության համար, կըմբռնեն այս խնդրի անհրաժեշտությունն ու կարևորությունը:

Սրա հետ միասին կուզենայի նախազգուշացնել, որ որոշում ընդունելով աշնանացան հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին, Կենտրոնական կոմիտեն այդ միջոցառումը չի դիտում որպես հերթական կամպանիա: Այստեղ, ինչպես որ ամենուրեք, անհրաժեշտ է խելացի մոտեցում, մանրակրկիտ նախապատրաստություն, յուրաքանչյուր շրջանի առանձնահատկությունների և տվյալ տարվա պայմանների հաշվառում: Նաև պետք է հաշվի առնել ցանքաշրջանառությունների գոյություն ունեցող սիստեմները, առկա հնարավորությունները: Եվ, անշուշտ, ոչ մի բան չպետք է արվի ի վնաս ընթացիկ տարվա բերքահավաքի:

Հուսով եմ, որ այդ որոշման կատարմանը տեղերում հենց այդպես կմո-



տենան կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները:

Եկող տարվա բերքի համար պակաս կարևոր չեն ցրտահերկը ժամանակին և որակով անցկացնելը, գերազանց սերմացուի պաշար տեսնելը: Ցավոք, շատ տնտեսություններ ուշանում են այս աշխատանքում և դրանով իսկ որոշակի դժվարություններ ստեղծում գարնանացանի անցկացման գործում, վաղօրոք փոքրացնում են բերքի աճի հնարավորությունները:

Ընկերնե՛ր, մենք ձեզ հետ առաջին անգամ չենք հանդիպում: Մենք առաջին անգամ չենք քննարկում հանրապետության տնտեսության զարգացման կենսականորեն կարևոր հարցերը: Կուզենայինք կանգ առնել այն բանի վրա, թե գործնականում ինչպես են իրացվում այն առաջարկություններն ու հետևությունները, որոնց մենք հանգել ենք համատեղ:

Հիշեցնեմ, որ 1973 թվականի օգոստոսին մենք խոսեցինք այն մասին, որ հեկտարից 20 ցենտներ հացահատիկը ժամանակի ընթացքում կարող է Ղազախստանի համար դառնալ նորմա: Ուզում եմ այսօր հիշեցնել այդ մասին: Դրա համար պետք է պայքարել:

Կուզենայի կրկին ընդգծել այս խնդրի հրատապությունը: Սովխոզների ու կոլտնտեսությունների նյութատեխնիկական բազան հնարավորություն է ընձեռում ավելի արագ տեմպերով ընթանալ դեպի այդ խնդրի լուծումը:

Մինչդեռ մի շարք տնտեսություններում, ցավոք, պատշաճ պայքար չի մղվում հողագործության բարձր կուլտուրայի համար, բարձր բերքի համար:

Նաև հիշեցնեմ, որ երեք տարի առաջ մենք ձեզ հետ խոսեցինք ոչխարների գլխաքանակն առնվազն 50 միլիոնի հասցնելու մասին: Ես հասկանում եմ, որ աննպաստ եղանակի պայմանների պատճառով անցյալ տարի առաջացած դժվարությունները կասեցրին նախատեսված միջոցառումների իրականացումը: Բայց այդ պայմաններում ևս կարելի էր ավելի շատ բան անել: Դրա հետ միասին, մեր միութենական մարմինները ևս այս գործում պետք է ձեզ անհրաժեշտ օգնություն ցույց տան:

Ճիշտն ասած, իմ թվարկած դեպքերից ամեն մեկի համար էլ կարելի է օբյեկտիվ պատճառներ գտնել, բայց դրանից ոչ մեկի վիճակը չի թեթևանա: Հենց այն պատճառով էլ մենք կոմունիստներ ենք, որ ակտիվ, նպատակասլաց գործունեությամբ, լարված աշխատանքով հաղթահարենք օբյեկտիվ դժվարությունները, կատարենք նախատեսված պլանները: Հարցը այդպես դրեց կուսակցության XXV համագումարը, և մենք էլ այդպես պետք է վարվենք թե՛ մեծ և թե՛ փոքր գործերում:

Վերջում, ընկերնե՛ր, կուզենայի ընդգծել, որ ինչպես բերքի բախտը, այնպես էլ ամբողջությամբ վերցված երկրի տնտեսական զարգացումը վերջին հաշվով կախված են բազմամիլիոն զանգվածների աշխատանքային ակտիվությունից, այն բանից, թե ինչպես են աշխատում բոլոր կոմունիստները, ամբողջ կուսակցությունը:

Հսկայական գոհունակություն է պատճառում այն փաստը, որ կուսակցությունն ու ժողովուրդը ամբողջ սրտով պաշտպանեցին համագումարի որոշումները և ակտիվորեն ձեռնամուխ են եղել դրանց գործնական իրականացմանը:

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվ, յուրաքանչյուր սովետական մարդ ձգտում է իր ավանդը ներդնել մեր ընդհանուր գործում՝ համագումարի որոշումների իրականացման մեջ: Դա իր վառ արտահայտությունն է գտնում հայրենասիրական բազում նախաձեռնությունների մեջ, հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար լայնորեն ծավալված սոցիալիստական մրցության մեջ, որն իրոք համաժողովրդական բնույթ է կրում: Բոլոր հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում, ձեռնարկություններում, սովխոզներում ու կոլտնտեսություններում ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ: Իսկական մասսայական բնույթ է ստացել հանդիպական պլանների մշակման շարժումը:

Մի խոսքով, լիակատար հիմքով կարելի է ասել, որ հեղափոխական ստեղծագործական ոգին, XXV համագումարի գաղափարները ապրում են մեր կուսակցության, մեր ժողովրդի ամենօրյա գործերում: Հասկացվելով և ընկալվելով միլիոնավոր զանգվածների կողմից, դրանք ավելի ու ավելի մեծ չափով են դառնում նյութական ուժ, մեր ամբողջ զարգացման հզոր արագացուցիչը:

Կուսակցական կազմակերպությունների պարտքը, կազմակերպչական ու քաղաքական ամբողջ աշխատանքի գլխավոր խնդիրն է՝ ապահովել, որ սովետական մարդկանց աշխատանքային ակտիվությունն այսուհետև ևս աճի, որ ավելի ու ավելի ուժեղանա նրանց կենդանի մասնակցությունն արմատական տնտեսական պրոբլեմների լուծմանը:

Սա, հասկանալի է, ամբողջովին ու լիովին վերաբերում է նաև Ղազախստանի կուսակցական կազմակերպությանը:

Թույլ տվե՛ք մեկ անգամ ևս վստահություն հայտնել, որ հանրապետությունը լավ կանցկացնի բերքահավաքը և հաջողությամբ կավարտի տասներորդ հնգամյակի առաջին տարին, կուսակցության XXV համագումարի որոշումների կատարման մեր աշխատանքի առաջին տարին:

Վերջում, թանկագին ընկերնե՛ր, թույլ տվեք ձեզ ի սրտե մաղթել աշխատանքային նոր մեծ հաջողություններ, ուրախ և բախտավոր կյանք:

***

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով: Խորհրդակցության մասնակիցները ճառի եզրափակիչ խոսքերն ընդունեցին հոտնկայս, բուռն օվացիայով:

—•—

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊՐԱԿՏԻԿԱՆ

## ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Ի. ԿԱՊԻՏՈՆՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ համոզիչ կերպով ցուցադրեց կուսակցության հեղափոխական-վերափոխիչ գործունեության վիթխարի թափն ու խորությունը, նրա շարքերի գաղափարական, քաղաքական և կազմակերպական միասնությունը:

Համագումարի ոգեշնչող ու մոբիլիզացնող վիթխարի ուժը ամենից առաջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցումն է. Զեկուցման դրույթներն ու հետևությունները հարստացնում են մարքս-լենինյան մտքի գանձարանը, ստեղծագործորեն զարգացնում մեր մեծ հեղափոխական ուսմունքը:

Համագումարը սահմանեց կուսակցության քաղաքական կուրսը առաջիկա տարիների համար: Նա նոր մեծ խնդիրներ առաջադրեց մեր հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման բնագավառում, ընդունեց համաշխարհային խաղաղության և միջազգային համագործակցության, հանուն ժողովուրդների ազատության և անկախության մղվող հետագա պայքարի ծրագիրը:

Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ տրված է անցած ժամանակաշրջանում կուսակցության կատարած քաղաքական, կազմակերպչական ու գաղափարա-դաստիարակչական աշխատանքի խոր վերլուծությունը, բացահայտված են հասուն սոցիալիզմի փուլում ՍՄԿԿ-ի զարգացման, նրա ներքին կյանքի հետագա կատարելագործման և հասարակության մեջ նրա ղեկավար դերի բարձրացման հիմնական օրինաչափություններն ու ուղիները:

Համագումարի արդյունքները, նրա որոշումներից բխող խնդիրները լայնորեն քննարկվել են կուսակցական ակտիվների ժողովներում, սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատանքային կոլեկտիվներում: Կոմունիստները, բոլոր աշխատավորները միահամուռ կերպով ու ջերմորեն հավանություն տվեցին համագումարի որոշումներին, պատրաստակամություն հայտնեցին հետևողականորեն կենսագործել դրանք: Նոր ուժով դրսևորվեց կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության, նրա Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի պրակտիկ գործունեության անվերապահ պաշտպանությունը սովետական ժողովրդի կողմից:

Սովետական մարդիկ բացառիկ ջերմությամբ ու երախտագիտությամբ են խոսում կուսակցության գլխավոր կուրսի մշակման ու իրականացման գործում ընկեր Լ. Ի. Բրեժնևի կատարած հսկայական դերի մասին, կոմունիզմի կառուց-

ման, աշխարհի խաղաղության ամրապնդման գործում նրա ներդրած անգնահատելի ավանդի մասին:

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներն ու գաղափարներն այսօր բնորոշում են երկրի հասարակական-քաղաքական ողջ կյանքը, սովետական մարդկանց գործերն ու մտքերը: Ուշագրավ է, որ նրա արդյունքների քննարկման ընթացքում հիմնական շեշտը դրվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ և համագումարի ընդունած «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» փաստաթղթում առաջադրված խնդիրների պրակտիկ կատարման վրա, ներքին հնարավորությունների ու ռեզերվների օգտագործման վրա:

Հանրապետություններում, երկրամասերում և մարզերում, ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում 1976 թվականի համար մշակել ու ստանձնել են սոցիալիստական պարտավորություններ, որոնք ելնում են համագումարի պահանջներից և նախատեսում են միջոցառումների լայն կոմպլեքս, որոնց նպատակն է բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը, բոլոր օղակների աշխատանքի որակը: Աշխատավորները պրակտիկ գործերով են պատասխանում համագումարի որոշումներին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի կոչին՝ ամրապնդել ու պահպանել հոգեկան այն բարձր տրամադրությունը, աշխատանքային այն ռիթմը, որոնք ծնվեցին նախահամագումարյան մրցության շնորհիվ: Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կուսակցական կոմիտե ձգտում է իր ավանդը ներդնել համագումարի որոշումների իրականացման գործում:

Միանգամայն հասկանալի է, որ տնտեսական և կուլտուրական շինարարության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառում ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների իրականացումը հսկայական չափով պայմանավորված է կուսակցության հետագա ամրապնդմամբ, կոմունիստների ակտիվության, նախաձեռնության և կարգապահության բարձրացմամբ, կուսակցական մարմինների ու կազմակերպությունների աշխատանքի բարելավմամբ:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԱՐՔԵՐԻ ՀԵՏԱԳԱ ԱՃԻ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՄԱՍԻՆ

Կուսակցության XXV համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ տրված է անցած ժամանակաշրջանում ՍՄԿԿ-ի կազմում տեղի ունեցած փոփոխությունների խոր վերլուծությունը, հանգամանորեն ցույց է տրված, թե ինչպես է զարգացել կուսակցությունը, ինչպես են աճել ու ամրապնդվել նրա շարքերը:

ՍՄԿԿ-ի կազմի ձևավորումը այդ տարիներին իրականացվել է կուսակցության անդամության լենինյան նորմերի ու սկզբունքների անխախտ հիմքի վրա: Հետևողականորեն ղեկավարվելով դրանցով, մեր կուսակցությունն իր շարքերի աճը կարգավորում է այնպես, որ լավագույն կերպով լուծի կյանքի առաջադրած խնդիրները: Այդ նպատակին են ուղղված նաև XXV համագումարի որոշումները: Ընդունված ծրագրային դրույթներին լիովին համապատասխան և ի զարգացումն նախորդ երկու համագումարների ցուցումների, դրանք հստակորեն կողմնորոշում են կուսակցական կազմակերպություններին, թե ինչ ուղղություններով պետք է այսուհետև վարել այդ աշխատանքը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ ՍՄԿԿ-ն դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցությունը, այն, ինչպես ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը, ամենևին չի կորցնում իր դասակարգային բնույթը: Իր բնույթով այն եղել ու մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը: Այդ բանը, բնականաբար, չի կարող անհրաժեշտ արտացոլում չստանալ նաև կուսակցության կազմի մեջ:

XXIII և հատկապես XXIV համագումարներից հետո կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն ուժեղացրել են առաջավոր բանվորներին կուսակցության մեջ ներգրավելու աշխատանքը: Նրանք այժմ ամուր կերպով



գերակշռող տեղ ունեն ՍՄԿԿ-ի շարքերն ընդունվողների մեջ: «Մենք խորապես գոհ ենք,— ասված է հաշվետու զեկուցման մեջ,— որ ներկայումս նրա շարքերն ընդունվողների 58 տոկոսը կազմում են բանվորները: Դա օրինաչափ է. դա արտացոլում է բանվոր դասակարգի առաջատար դերը հասարակության կյանքում»:

Ընդսմին, բնորոշ է, որ բարձր զարգացած ինդուստրիա ունեցող մարզերում, ինչպես, օրինակ, Կույբիշևի, Չելյաբինսկի, Դոնեցկի, Կարագանդայի, կուսակցական նոր համալրման մեջ բանվորները կազմում են 65-ից մինչև 70 և ավելի տոկոս:

Վերջին հինգ տարում բանվորների թիվը կուսակցության սոցիալական կազմում աճել է 750 հազարով և այժմ անցնում է 6,5 միլիոնից: Դրա հետ մեկտեղ հարկավոր է նշել, որ ոչ ամենուրեք է դեռևս բավարար ուշադրություն նվիրվում կուսակցության մեջ բանվորների ընդունմանը: Ըստ երևույթին, կուսակցական կոմիտեները, ամենից առաջ կազմակերպական-կուսակցական աշխատանքի նրանց բաժինները, պետք է ուշադիր հետևեն այդ պրոցեսներին, վերլուծեն դրանք, անհրաժեշտ հետևություններ անեն: Նախ, հարկավոր է ավելի մանրազնին մոտենալ կուսակցության մեջ բանվորների ընտրությանը, նրա շարքերն ընդունել բանվոր դասակարգի իրոք լավագույն ներկայացուցիչներին, որոնք օրինակ են ցույց տալիս աշխատանքում, հասարակական կյանքում և անձնական վարքում: Երկրորդ, հարկավոր է բարելավել ՍՄԿԿ-ի շարքերն ընդունված բանվորների դաստիարակության, գաղափարա-քաղաքական կոփման աշխատանքը: Այդ են պահանջում XXV համագումարի որոշումները, նրա առաջադրած կուսակցության հետագա ամրապնդման խնդիրները:

Համագումարը կուսակցական կազմակերպություններին առաջադրում է շարունակել բարելավել առաջավոր կոլտնտեսականների ընտրությունը կուսակցության մեջ: Դա բխում է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդման, լենինյան ագրարային քաղաքականության հաջող կենսագործման շահերից:

XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում կուսակցության շարքերն ընդունվածների ավելի քան 11 տոկոսը կազմում են կոլտնտեսականները: Կուսակցական միջնախավը կոլտնտեսային գյուղացիության շրջանում շարունակում է աճել: Բարելավվում է կուսակցության մեջ ընդունվող կոլտնտեսականների որակական կազմը: Նրանց մեջ գնալով ավելի է մեծանում տրակտորիստների, կոմբայնավարների, անասնապահական կոմպլեքսների աշխատողների և մյուս մեխանիզատորների թիվը, որն արտացոլում է գյուղատնտեսական աշխատանքի ինդուստրացման պրոցեսը:

Համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ մեծ նշանակություն է տրվում վարպետների, հերթափոխային ինժեներների, տեղամասերի պետերի, գյուղատնտեսների, անասնաբույժների և արտադրական պրոցեսի մյուս անմիջական մասնակիցների ընդունելությանը կուսակցության մեջ:

Այժմ, ընդհանուր առմամբ, բանվորները, կոլտնտեսականները և նյութական արտադրության ոլորտում՝ հասարակական կյանքի այդ վճռական ոլորտում զբաղված մյուս աշխատողները կազմում են ՍՄԿԿ-ի շարքերն ընդունվածների մոտ 80 տոկոսը: Սա լավ ցուցանիշ է, որը հարկավոր է ամրապնդել:

Կուսակցությունը հաշվի է առնում մտավորականության կարևոր դերը գիտատեխնիկական հեղափոխության ծավալման, ժողովրդի կուլտուրայի բարձրացման, կոմունիստական շինարարության բոլոր խնդիրների լուծման գործում: Վերջին 5 տարում ՍՄԿԿ-ի շարքերն են ընդունվել ժողովրդական տնտեսության ավելի քան 500 հազար մասնագետներ, բժիշկներ, ուսուցիչներ, գիտության, գրականության և արվեստի գործիչներ: Դա կազմում է կուսակցության մեջ ընդունված բոլոր ծառայողների ավելի քան չորս հինգերորդը:

Որոշ տեղերում այն կարծիքն է տարածված, թե իբր անբավարար քանակությամբ մտավորականներ են ընդունվում կուսակցության մեջ: Դա, սակայն, չի համապատասխանում իրական վիճակին: Կուսակցության անդամ են յուրաքանչյուր չորրորդ ինժեները, տեխնիկը, գյուղատնտեսը, անասնաբույժը, անաս-

նաբույժը, ուսուցիչը, յուրաքանչյուր հինգերորդ-վեցերորդ բժիշկը, յուրաքանչյուր երկրորդ գիտության թեկնածուն և այլն։

Վերջին տարիներս կուսակցական շարքերն ավելի ու ավելի ակտիվորեն են համալրվում երիտասարդության հաշվին։ Ընդ որում, եթե 1966—1970 թվականներին կուսակցության անդամության թեկնածուներ ընդունվածների թվում կոմերիտականները կազմում էին 45,4 տոկոս, ապա 1975 թվականին նրանք 70 տոկոսից անցնում են։ Երիտասարդության հարաճուն հոսքը ՍՄԿԿ շարքերը, ինչպես նշվում է Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ակնառու ցույց է տալիս, որ կուսակցության կենսական ուժերը անսպառ են, որ երիտասարդ սերունդը խորապես նվիրված է կոմունիզմի իդեալներին։

Կուսակցության մեջ երիտասարդության ընդունելությունը քաղաքական մեծ կարևորություն ունեցող հարց է, որն արժանի է ամենալուրջ ուշադրության։ Հարկավոր է կուսակցության մեջ է՛լ ավելի ակտիվորեն ներգրավել երիտասարդներին՝ բանվորների և կոլտնտեսականների, ինչպես նաև ուսանողների թվից՝ առաջին հերթին նրանց, ովքեր բուհ են եկել արտադրությունից և սովետական բանակի շարքերից։ Այս ամենն իր դրական արդյունքները կտա ինչպես երիտասարդ սերնդի դաստիարակության, նույնպես և կադրերի ռեզերվի նախապատրաստման առումով։

Տարեցտարի ՍՄԿԿ շարքերն ավելի շատ կանայք են ընդունվում։ XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ընդունվել է ավելի քան 764 հազար կին, կամ թեկնածուների ընդհանուր թվի 29,5 տոկոսը։ Այժմ կանայք կազմում են բոլոր կոմունիստների գրեթե մեկ քառորդը։ Այսուհետ ևս հարկավոր է անդուլ հոգատարություն ցուցաբերել կուսակցությունը լավագույն աշխատավորուհիների հաշվին համալրելու համար։

Հաշվետու զեկուցման մեջ նշված է, որ երեսուն տարում ՍՄԿԿ թվակազմն աճել է գրեթե երեք անգամ։ Միանգամայն ակնհայտ է, որ նրա շարքերի աճը շարունակվելու է։ Այս է օբյեկտիվ միտումը։ Սակայն ՍՄԿԿ-ն զարկ չի տալիս իր թվական աճին։ Նա իր շարքերն է ներգրավում միայն նրանց, ովքեր գործով ապացուցել են, որ կուսակցության մեջ ընդունվում են, Լենինի խոսքերով ասած, ոչ թե ինչ-որ շահ ստանալու համար, այլ հանուն կոմունիզմի օգտին անձնազոհ աշխատանքի։

Համագումարի այս դրույթը կուսակցական կոմիտեներին պարտավորեցնում է ուշադիր հետևել ՍՄԿԿ-ի շարքերի քանակական աճին։ Բնական է, որ տարբեր կազմակերպություններ համալրվում են ոչ միատեսակ։ Բայց երբ դրանցից մի քանիսն աճում են անհամեմատ ավելի արագ, քան միջին հաշվով ամբողջ կուսակցությունը, ապա արժե պարզել, թե որքանով է դա արդարացված, և թե արդյոք այստեղ չեն հրապուրվում քանակական կողմով։

«Եվ որքան առաջ ենք շարժվում, որքան ավելի խոշոր խնդիրներ է լուծում կուսակցությունը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— այնքան ավելի շատ պետք է հոգ տանենք՝ նրա շարքերը համալրելու թարմ ուժերով, այն մարդկանց հաշվին, ովքեր արժանացել են սկզբնական կուսակցական կազմակերպության, ամբողջ կոլեկտիվի ճանաչմանը, ովքեր իրենց ակտիվորեն են դրսևորում արտադրության մեջ և հասարակական կյանքում»։

Համագումարը անհրաժեշտ համարեց բարձրացնել թեկնածուական ստաժի նշանակությունը և հստակորեն որոշեց, թե ինչ է պահանջվում դրա համար։ Կուսակցության անդամության թեկնածուի քաղաքական ու գործարար հատկությունների համակողմանի ստուգում, նրա մարքս-լենինյան դաստիարակություն՝ այս ամենին պետք է մոտենալ ամենայն խստությամբ, ընդգծվում է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։

Ինչպե՞ս լավագույն ձևով կատարել համագումարի այս ցուցումները։ Մենք արդեն որոշակի փորձ ունենք։ Կուսակցական կազմակերպություններն անդամության թեկնածու ընդունելիս սկսել են ավելի լավ հաշվի առնել աշխատանքային կոլեկտիվի կարծիքը։ Ընդունելության հարցերը քննարկվում են կուսակցական գոնբաց ժողովներում, ուր հրավիրում են նաև բրիգադի կամ տեղամասի անկուսակցական անդամներին, այսինքն՝ նրանց, ովքեր աշխատում են ընդունվողի կողքին և նրան լավ են ճանաչում ոչ միայն աշխատանքում,



այլև ամենօրյա կյանքում։ Այդ ժամանակ համակողմանիորեն քննարկվում են կուսակցության մեջ մտնողի արժանիքներն ու թերությունները, նրան հայտնվում համապատասխան ցանկություններ և հանձնարարականներ։ Կուսակցության անդամության թեկնածուների համար ստեղծվում են տարբեր տիպի դպրոցներ, նրանց ինֆորմացիաները լսվում են կուսակցական ժողովներում և բյուրոների նիստերում։ Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, աշխատանքի նման ձևերն արդարացնում են իրենց, կարևոր է ավելի լայնորեն օգտագործել դրանք։

Ամփոփելով ասվածը, հարկավոր է շեշտել, որ ՍՄԿԿ-ի շարքերի աճը պետք է համապատասխանի կուսակցության ծրագրային դրույթներին, հաշվի առնի մեր հասարակության սոցիալական կառուցվածքում տեղի ունեցած փոփոխությունները։ Կուսակցության կազմի կարգավորմանը այսուհետև նույնպես հարկավոր է մոտենալ դիֆերենցված ձևով, հաշվի առնելով այս կամ այն մարզի, շրջանի, քաղաքի առանձնահատկությունները, յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվի սպեցիֆիկան, տնտեսական և կուլտուրական շինարարության այս կամ այն տեղամասում կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու անհրաժեշտությունը։

Մինչդեռ որոշ տեղերում կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները այդ գործում հանդես են բերում պարզունակ մոտեցում։ Ավելորդ կերպով կանոնակարգվում է սկզբնական կազմակերպությունների աշխատանքը, թույլ տրվում ՍՄԿԿ-ի շարքերի աճը մեխանիկորեն կարգավորելու փաստեր։ Ինքնին հասկանալի է, որ նման պրակտիկան չի համապատասխանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ցուցումներին և կուսակցության կանոնադրության պահանջներին։

Հավանաբար, գլխավորը, որի վրա անհրաժեշտ է հրավիրել ուշադրությունը, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կուսակցական խմբերի, բոլոր կոմունիստների պատասխանատվության բարձրացումն է կուսակցական նոր համալրման որակի համար, ՍՄԿԿ-ի շարքերն ընդունելիս անհատական ընտրության սկզբունքի խիստ պահպանման համար։ Հարկավոր է բարձրացնել պահանջկոտությունը երաշխավորողների նկատմամբ, հասնել այն բանին, որ նրանք լինեն երիտասարդ կոմունիստների զգայուն և ուշադիր դաստիարակներ, շարունակ հետևեն նրանց գաղափարական ու բարոյական աճին։

Համագումարի որոշումները կուսակցական կազմակերպություններին պարտավորեցնում են հետևողականորեն կենսագործել կուսակցության անդամի կոչումն ու նշանակությունը բարձրացնելու և կուսակցական շարքերի անաղարտության մասին լենինյան պատգամները։ Այդ բանը պետք է ապահովվի ոչ միայն ՍՄԿԿ շարքերը նոր ընդունվողների նկատմամբ ներկայացվող բարձր պահանջկոտությամբ, այլև դաստիարակելով բոլոր կոմունիստներին որպես կուսակցության գիտակից, գաղափարապես կոփված մարտիկներ, կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցներ։ Այս գործում վերջին տարիներին կուտակվել է բավական մեծ փորձ։ Այստեղ դրական դեր կատարեց կուսակցական փաստաթղթերի փոխանակումը։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, թե մենք հասել ենք այն նպատակներին, որ հետապնդում էր փոխանակումը։ Այն նպաստեց կոմունիստների, կուսակցական կազմակերպությունների ակտիվացմանը՝ նրանց առջև ծառացած խնդիրների լուծման համար մղվող պայքարում։

Կուսակցական կազմակերպությունների շարքերն ամրապնդվել են, դարձել ավելի կազմակերպված, համախմբված։ Հարստացել են կուսակցության անդամների և թեկնածուների հետ տարվող անհատական աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այժմ ավելի հավասարաչափ են բաշխվում կուսակցական հանձնարարությունները։ Դաստիարակչական նպատակներով ավելի լավ են օգտագործվում կուսակցական ներգործության միջոցները։ Փոխանակման կարևոր արդյունքը կոմունիստների փոխադարձ պահանջկոտության բարձրացումն է։ Փոխանակման ժամանակաշրջանում նոր փաստաթղթեր չստացավ մոտ 347 հազար մարդ։ Այդ նրանք են, ովքեր շեղվել էին կուսակցական կյանքի նորմերից, խախտել կարգապահությունը, կորցրել կապը կուսակցական կազմակերպությունների հետ։







Կուսակցական շատ կազմակերպություններ, օգտագործելով փոխանակման ժամանակ ձեռք բերած փորձը, հաջողությամբ աշխատում են իրենց շարքերի համախմբվածության և մարտունակության հետագա բարձրացման վրա։ Դրա հետ մեկտեղ կան նաև այնպիսի կազմակերպություններ, որոնք չկարողացան ամրապնդել ձեռք բերած արդյունքները։ Որոշ տեղերում կորցրել են հետաքրքրությունը անհատական աշխատանքի հանդեպ, թուլացրել են պահանջկոտությունը կուսակցության անդամների ու թեկնածուների նկատմամբ՝ կանոնադրական պարտականությունների կատարման համար։ Հարկավոր է ուշադրությամբ զբաղվել այդպիսի կազմակերպությունների գործերով, օգնել նրանց՝ բարելավելու աշխատանքը։

Համագումարը սահմանեց ներկուսակցական հարաբերությունների ամբողջ սիստեմի հետագա կատարելագործման խնդիրները՝ որպես մեր կուսակցության ուժի ու ամրության, հասարակության մեջ նրա ղեկավար դերի հաջող իրականացման կարևորագույն պայմաններից մեկը։

Մեր կուսակցությունն այսօր մի մեծ, հզոր օրգանիզմ է։ Եվ շատ կարևոր է, որ նրա բոլոր օղակներն աշխատեն ներդաշնակ, ակտիվորեն ու նպատակասլաց։ Դրան կարելի է հասնել՝ միայն անշեղորեն կիրառելով կուսակցական կյանքի լենինյան նորմերն ու կուսակցական ղեկավարության սկզբունքները, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը։ Հաստատելով և պաշտպանելով դրանք՝ պայքարելով դրանք խախտողների դեմ, կուսակցությունը միշտ ցուցաբերել է հաստատակամություն և սկզբունքայնություն։ Ինչպես հայտնի է, այս տեսակետից մեծ նշանակություն ունեցան ՍՄԿԿ XX համագումարի, Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թվականի) պլենումի, ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների որոշումները։

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի կենսագործումը մեր կուսակցության մեջ ամենից առաջ իրականացվում է ներկուսակցական դեմոկրատիայի հետագա ընդլայնման ու խորացման միջոցով։ Այդ աշխատանքը շարունակ տարվում է ամենատարբեր ուղղություններով։ Դրանցից գլխավորն է կոմունիստների ակտիվության բարձրացումը կուսակցության քաղաքականության մշակման ու պրակտիկ իրականացման գործում։

Պրակտիկա է դարձել, երբ կուսակցական ակտիվի, կոմունիստների լայն զանգվածների քննարկմանն են դրվում ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, համակուսակցական նշանակություն ունեցող կարևորագույն փաստաթղթերը։ Դա, մի կողմից, օգնում է կոմունիստներին՝ ավելի խոր ըմբռնելու կուսակցության քաղաքականության իմաստը, անձնական պատասխանատվությունը դրա կենսագործման համար, որոշելու իր դերն ու տեղը ընդհանուր շարքում, ապահովում է հայացքների ու գործողությունների միասնությունը, իսկ մյուս կողմից՝ ղեկավար կուսակցական մարմիններին հնարավորություն է տալիս ավելի լրիվ հաշվի առնել կուսակցական մասսաների կարծիքներն ու փորձը, գործել՝ հենվելով կոմունիստների կոլեկտիվ կամքի վրա։

Այդ առանձին ուժով դրսևորվեց XXV համագումարի նախօրյակին տեղի ունեցած հաշվետու-ընտրական կամպանիայի ժամանակ, որն աչքի էր ընկնում գործարարությամբ, կոմունիստների մեծ ակտիվությամբ ու հասունությամբ, քննադատության և ինքնաքննադատության բարձր մակարդակով։ Կուսակցության մեջ հաշվետվությունների և ընտրությունների շրջանում, համագումարի նախապատրաստման ընթացքում, ինչպես նաև նրա արդյունքները քննարկելու ժամանակ, կոմունիստները, աշխատավորներն արտահայտեցին բազմաթիվ առաջարկություններ, ցանկություններ, դիտողություններ, որոնք հաճախ ունեն համակուսակցական, համապետական նշանակություն։ Միայն «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների» նախագծի քննարկման ժամանակ արվել է ավելի քան մեկ միլիոն առաջարկություն։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ոչ մի առաջարկություն չմնա առանց



ուշադրության։ Այդ բանի օրինակ է ցույց տալիս Կենտրոնական կոմիտեն։ Համագումարից անմիջապես հետո նա ընդհանրացրեց պատգամավորների կողմից միութենական օրգանների հասցեին արված դիտողություններն ու առաջարկությունները։ Մինիստրություններին և գերատեսչություններին տրվեցին կոնկրետ հանձնարարություններ, դրանք կատարելու համար սահմանվեցին ժամկետներ։ Կենտկոմի բաժինները վերահսկում են այդ գործին։ Կոմունիստների, բոլոր աշխատավորների առաջարկությունների իրականացման աշխատանքում նույնպիսի կարգ պետք է հաստատվի յուրաքանչյուր կուսակցական կոմիտեում։

Մեր կուսակցության իսկական դեմոկրատիզմի կարևորագույն գիծը Վ. Ի. Լենինը համարում էր այն, որ կուսակցության բոլոր գործերը վարում են կուսակցության բոլոր անդամները՝ ուղղակի կամ ներկայացուցիչների միջոցով, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության (տես Երկեր, հ. 11, էջ 546)։ Այդ բանը դրսևորվում է, մասնավորապես, կուսակցական գործերի ղեկավարման մեջ կոմունիստներին ավելի ու ավելի լայնորեն ներգրավելու գործում։ Բավական է ասել, որ կուսակցության ընտրովի ակտիվը XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում ավելացել է 700 հազարով և այժմ կազմում է 4,3 միլիոն մարդ։ Բնորոշ է, որ կուսակցական ակտիվի կազմում անշեղորեն ավելանում է բանվորների և կոլտնտեսականների թիվը։ Կուսակցության բոլոր օղակների ղեկավար մարմիններում ընտրվել են ավելի քան մեկուկես միլիոն բանվոր ու կոլտնտեսական։ Ներկայումս փաստորեն կուսակցության բոլոր շրջկոմների, քաղկոմների, մարզկոմների ու երկրկոմների մոտավորապես կեսի բյուրոների կազմում կան բանվորներ ու կոլտնտեսականներ։

Կուսակցական կոմիտեները պետք է, որքան կարելի է, ավելի լրիվ ու ավելի լավ օգտագործեն այն գիտելիքներն ու փորձը, որ ունի մեր ընտրովի ակտիվը։ Հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել կուսակցական մարմիններում ընտրված բանվորների ու կոլտնտեսականների հետ տարվող աշխատանքին, անել ամեն ինչ, որպեսզի նրանք շարունակ աճեն որպես քաղաքական աշխատողներ։ Այս տեսակետից հետաքրքրական փորձ է կուտակվել, մասնավորապես, Ուզբեկական հանրապետական կուսակցական կազմակերպությունում. Կուսակցական կոմիտեների կազմում ընտրված բանվորներն ու կոլտնտեսականներն ակտիվորեն մասնակցում են պլենումների և բյուրոների քննարկմանը դրվող հարցերի նախապատրաստմանը, աշխատավորների կոլեկտիվներում կուսակցական որոշումների պարզաբանմանը։ Հատուկ սեմինարներում բանվորներն ու կոլտնտեսականները ուսումնասիրում են կուսակցական աշխատանքի տեսության ու պրակտիկայի հարցերը։ Գտնվելով կուսակցական մարմինների կազմում՝ նրանք ձեռք են բերում ղեկավարի համար անհրաժեշտ հմտություններ։ Նրանցից շատերը վերջին տարիներին առաջ են քաշվել կուսակցական ու տնտեսական աշխատանքի։

XXV համագումարը կողմնորոշում է դեպի ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացումը, կուսակցական ու պետական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդման գծի հետևողական իրագործումը։ Այս հարցերը պետք է միշտ գտնվեն յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի, յուրաքանչյուր կուսկազմակերպության տեսադաշտում։

«Ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացումը, կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտության բարձրացումը՝ լենինյան այս սկզբունքները,— նշված է հաշվետու զեկուցման մեջ,— անցած փուլ չեն։ Դրանք կուսակցության զարգացման հիմքն են նաև մեր օրերին»։

## ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ

Հայտնի է, որ կուսակցության՝ որպես սովետական հասարակության ուղղություն տվող և կազմակերպող ուժի դերի աճը անմիջականորեն կապված է նրա կյանքի բոլոր ոլորտների կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման հետ։ Որպեսզի այդ ղեկավարությունը միշտ լինի պատշաճ բարձրության վրա, ՍՄԿԿ-ն շարունակ բարելավում է իր աշխատանքի ձևերն ու մեթոդ-

ները, վերցնում է ամեն մի նորը, առաջավորը, որը համապատասխանում է ժամանակի ոգուն, սոցիալիստական հասարակարգի և հենց կուսակցության զարգացման ձեռքբերված փուլին։

Կուսակցության ղեկավար դերի իրականացումը մարմնավորվում է նախ և առաջ նրա Կենտրոնական կոմիտեի գործունեության մեջ։ «Քաղաքական կամ կազմակերպական ոչ մի կարևոր հարց,— նշում էր Լենինը,— մեր հանրապետությունում պետական ոչ մի հիմնարկություն չի լուծում առանց կուսակցության Կենտկոմի ղեկավար ցուցումների» (Երկեր, հ. 31, էջ 39)։

Կենտրոնական կոմիտեն բարձր հեղինակություն և վստահություն է վայելում և՛ կուսակցության, և՛ ժողովրդի շրջանում։ Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ նրա որոշումներն ու ցուցումներն ընկալում են որպես հարազատ, կենսական գործ, որպես գործողության ուղեցույց։

Կենտրոնական կոմիտեի, նրա Քաղբյուրոյի և Քարտուղարության որոշումները, որոնք ընդունվում են հանգամանալի կոլեկտիվ քննարկումից հետո, կուսակցությանը զինում են տնտեսական, սոցիալ-քաղաքական և միջազգային հրատապ պրոբլեմների խոր վերլուծությամբ, կուսակցական կազմակերպություններին տալիս են հստակ կողմնորոշում և դիրեկտիվներ։ Կենտրոնական կոմիտեի գործունեությունը ժամանակակից կյանքի ամենաբարդ հարցերը լուծելիս մարքս-լենինյան մեթոդի հմուտ կիրառման օրինակ է, համոզիչ վկայություն այն բանի, որ կուսակցական ղեկավարությունը և՛ գիտություն է, և՛ բարձր արվեստ։

Կենտրոնական կոմիտեն կենդանի, ամենօրյա կապ է պահպանում տեղերի հետ։ Նա ուշադիր հետևում է կուսակցական կազմակերպությունների աշխատանքին, այն դնում անհրաժեշտ հունի մեջ։ Վերջին տարիներին Կենտկոմը քննարկել է մի ամբողջ շարք կուսակցական կոմիտեների գործունեությունը՝ էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, կազմակերպական-քաղաքական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի կատարելագործման, մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացման ղեկավարման մարզում։

Օրինաչափ է, որ կուսակցական կոմիտեների գործունեության մեջ գլխավոր տեղը գրավում են ժողովրդատնտեսական պլանների կատարման հարցերը։ Իրենց ողջ կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքը նրանք ծառայեցնում են տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը։ Օգտագործելով տնտեսական ու քաղաքական հնարավորությունները, կուսկազմակերպությունները ձգտում են արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, բարձրացնել արտադրության արդյունավետությունը, բարելավել արտադրանքի որակը։

Այս առումով մեծ աշխատանք են կատարում Մոսկվայի կուսակցական կազմակերպությունները։ Նրանք որոշել և ձգտում են հասնել այն բանին, որ քաղաքում չլինեն ետ մնացող բրիգադաներ, տեղամասեր, արտադրամասեր, ձեռնարկություններ, շինարարական կազմակերպություններ, տնտեսություններ, որպեսզի յուրաքանչյուր ամիս, եռամսյակ և ամբողջ 1976 թվականին պլանը կատարեն բոլոր կոլեկտիվները և բոլոր ցուցանիշներով։

Կատարելով ընկեր Լ. Ի. Բրեժնևի խորհուրդներն ու ցուցումները, որ նա հայտնել է ԶԻԼ-ի բանվորների առջև արտասանած ճառում, մոսկվացիները ձգտում են արտադրության արդյունավետության մակարդակը բարձրացնել արտադրության վերակառուցման, տեխնիկական վերազինման, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների է՛լ ավելի լայն արմատավորման հաշվին։ Մի փաստ միայն. Մոսկվայի ավելի քան 800 ձեռնարկություններ գործարար սերտ կապեր են հաստատել գիտահետազոտական, նախագծային ինստիտուտների և բուհերի հետ, նրանց հետ լուծում են արտադրական խոշոր պրոբլեմներ։

Տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու համար մղվող պայքարի արդեն առաջին ամիսներին նկատվել է մայրաքաղաքի աշխատանքային կոլեկտիվների ստեղծագործական ակտիվության աճ։ Համագումարից հետո այստեղ ծնունդ են առել հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնություններ, որոնք լայն պաշտպանություն և տարածում են գտել ամբողջ երկրում։



Համագումարի որոշումները, ժողովրդատնտեսական պլանները և հնգամյակի առաջին տարվա համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար ակտիվորեն ու արդյունավետ են աշխատում Բելոռուսիայի, Ղազախստանի, Ադրբեջանի, Կրասնոյարսկի և Կրասնոդարի երկրամասերի, Մոսկվայի, Լենինգրադի, Դնեպրոպետրովսկի և այլ մարզերի կուսկազմակերպությունները։ Այստեղ ձեռնարկություններում և կազմակերպություններում լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը, հայտաբերվում և գործի են դրվում արտադրության նորանոր ռեզերվներ։ Այս ամենի մեջ իր կոնկրետ մարմնավորումն է գտնում կուսակցության քաղաքականության միացումը մասսաների կենդանի ստեղծագործության հետ։

Հայտնի է, թե մեր կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, Քաղբյուրոն և անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևը ինչպիսի մեծ ուշադրություն են նվիրում ագրարային քաղաքականության մշակմանն ու իրականացմանը, գյուղատնտեսական արտադրության կայուն աճի ապահովմանը։ Այս հարցերը հանգամանորեն ու խորը կերպով քննարկվել են XXV համագումարում։

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն քննարկեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջարկությունները միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու, գյուղատնտեսության կառավարման կազմակերպական ձևերը կատարելագործելու մասին և ընդունեց հայտնի որոշումը։ Խոսքը տնտեսական և սոցիալ-քաղաքական հսկայական նշանակություն ունեցող միջոցառումների մասին է։ Ըստ էության, սա լենինյան կոոպերատիվ պլանի պրակտիկ կենսագործման նոր փուլ է զարգացած սոցիալիզմի պայմաններում։ Այս որոշմամբ Կենտրոնական կոմիտեն մի անգամ ևս համոզիչ կերպով ցույց է տալիս, թե որքան կարևոր է մեր ամբողջ տնտեսական քաղաքականության մեջ լենինյան, ստեղծագործական ձևով մոտենալ գործին, ժամանակին հաշվի առնել կյանքի հասունացած պահանջմունքները։

XXV համագումարի որոշումները պահանջում են, որ բոլոր կուսակցական կոմիտեները, որպես քաղաքական ղեկավարության մարմիններ, է՛լ ավելի հմտորեն ուղղություն տան և ակտիվացնեն պետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների և աշխատավորների կոլեկտիվների գործունեությունը։

Կուսակցական ղեկավարման արդյունավետությունն ուղղակի ու անմիջականորեն պայմանավորված է կուսակցական կոմիտեների աշխատանքի մակարդակով, այն բանով, թե որքան որակյալ ձևով ու խորությամբ են հարցերը քննարկվում պլենումներում, բյուրոների և քարտուղարությունների նիստերում, որքան ակտիվ ու նպատակասլաց են գործում այդ մարմինները՝ լուծելով տնտեսական-քաղաքական արմատական խնդիրները։

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը, օրինակ, մեծ ուշադրություն է նվիրում կուսակցական կոմիտեների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացմանը, իսկական կուսակցական ոճի, տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծման նկատմամբ կուսակցական մոտեցման հաստատմանը, կուսակցության մարզկոմների, քաղկոմների, շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի բարելավմանը։

Վերջին տարիներին հանրապետությունում շատ բան է արվել կուսակցական և պետական ապարատի բոլոր օղակները կադրերով ամրապնդելու, ղեկավար աշխատողների կարգապահությունը, կուսակցական դիրեկտիվների կատարման համար նրանց պատասխանատվությունը բարձրացնելու համար։ Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը համառորեն ձգտում է, որ բոլոր կուսակցական կոմիտեներում հետևողականորեն պահպանվեն կուսակցական կյանքի լենինյան նորմերը և կուսակցական ղեկավարման սկզբունքները։ Կոմկուսակցության Կենտկոմում լսվել են մի շարք մարզկոմների հաշվետվությունները՝ տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ կուսակցական կազ-

մակերպությունների դերի բարձրացման միջոցառումների մասին, սկզբնական կազմակերպությունների քարտուղարների հետ կուսակցական կոմիտեների կատարած աշխատանքի, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքի ոճն ու մեթոդները կատարելագործելու մասին։ Հանգամանորեն վերլուծվել է նաև մարզկոմների պլենումների, բյուրոների ու քարտուղարությունների անցկացման պրակտիկան, քննարկվել են առաջարկություններ՝ խորհրդակցությունների, նիստերի և մյուս մասսայական միջոցառումների թիվը կրճատելու և դրանց անցկացումը կարգավորելու մասին։

Կուսակցական ղեկավարման մակարդակը, նշվում է XXV համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, անմիջականորեն պայմանավորված է այն բանով, թե որքան մարտունակ ու ձեռներեց են մեր կուսակցության հիմքը կազմող սկզբնական կուսակցական կազմակերպությունները։

Ներկայումս ՍՄԿԿ-ում կան ավելի քան 390 հազար սկզբնական և ավելի քան 400 հազար արտադրամասային կուսակցական կազմակերպություններ, գրեթե 530 հազար կուսակցական խմբեր։ Կենտկոմն անդուլ հոգատարություն է ցուցաբերում սկզբնական կուսկազմակերպությունների ներքին կյանքն ու գործունեության եղանակները, նրանց կառուցվածքը շարունակ զարգացնելու և կատարելագործելու, կուսակցության քաղաքական կուրսի, նրա որոշումների հաջող կենսագործման նպատակով։

Այժմ, երբ հարկավոր է ողջ ժողովրդին, բոլոր կոմունիստներին ու անկուսակցականներին ոտքի հանել՝ կատարելու XXV համագումարի որոշումները, կարևոր է սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի որակի առավել բարձրացումը։ Առավելագույն ուշադրություն և օգնություն սկզբնական, արտադրամասային կազմակերպություններին և կուսխմբերին— ահա ինչի վրա է բևեռում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն բոլոր կուսակցական կոմիտեների ուշադրությունը։

Կուսակցության ստորին օղակների մարտունակությունն ուժեղացնելու, արտադրական և քաղաքական-դաստիարակչական խնդիրների լուծման մեջ նրանց ակտիվությունը բարձրացնելու գործում լավ փորձ են կուտակել Լենինգրադի, Սվերդլովսկի, Ռոստովի, Մինսկի և այլ մարզային կուսակցական կազմակերպություններ։ Կուսակցական կոմիտեները սիստեմատիկաբար ընդհանրացնում և տարածում են սկզբնական, արտադրամասային կազմակերպությունների և կուսակցական խմբերի աշխատանքի լավագույն փորձը, ամեն կերպ ձգտում են ուժեղացնել նրանց ազդեցությունն աշխատանքային կոլեկտիվների կյանքի ու գործունեության տարբեր կողմերի վրա։ Նրանք կանոնավոր կերպով կազմակերպում են կուսակցական կազմակերպությունների քարտուղարների և կուսխմբերի կազմակերպիչների սեմինարներ ու խորհրդակցություններ, որոնց առջև զեկուցումներով հանդես են գալիս կուսակցական կոմիտեների քարտուղարները, բաժինների վարիչները, տնտեսական ղեկավարները։

Հատկապես կցանկանայի ասել արտադրական և գիտա-արտադրական միավորումների կուսկազմակերպությունների մասին, որոնց թիվը երկրում հասնում է ավելի քան երկու հազարի։ Նրանց այժմ բաժին է ընկնում ողջ արդյունաբերական արտադրանքի գրեթե մեկ քառորդ մասը։ Այժմ գյուղերում ևս ստեղծվում են միավորումներ։ Ե՛վ արդյունաբերական, և՛ գյուղատնտեսական միավորումներում, որպես կանոն, գործում են աշխատավորների խոշոր կոլեկտիվներ։ Կուսակցական կազմակերպություններն այստեղ միավորում են կոմունիստների մեծ ջոկատներ։ Կատարելագործվում են այդ կազմակերպությունների կառուցվածքը, նրանց աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Այն դեպքերում, երբ միավորման մեջ մտնող ձեռնարկությունները գտնվում են մեկ շրջանի կամ քաղաքի տերիտորիայում, որպես կանոն, ստեղծվում են միասնական կուսկազմակերպություններ։ Իսկ եթե այդ ձեռնարկությունները գտնվում են տարբեր քաղաքներում և անգամ մարզերում, ապա այստեղ օգտագործվում են կուսակցական կազմակերպությունների աշխատանքի կոորդինացման այնպիսի ձևեր, ինչպես քարտուղարների խորհուրդները, կուսակցական ակտիվի համատեղ ժողովները և այլն։ Յուրաքանչյուր կոնկրետ դեպքում դրանք ունեն իրենց սպեցիֆիկան, իրենց առանձնահատկությունները, որոնք անհրաժեշտ է համակողմանի հաշվի առնել։



XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն առաջ քաշեց ու խորապես հիմնավորեց աշխատանքի լենինյան ոճին՝ որպես կուսակցական ղեկավարման հաջողության կարևորագույն պայմանի, տիրապետելու վերաբերյալ դրույթը։ Լենինյան ոճը, ասաց նա, ստեղծագործական ոճ է, որին խորթ է սուբյեկտիվիզմը, նրան բնորոշ է գիտական մոտեցումը հասարակական բոլոր պրոցեսների նկատմամբ։ Այն ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմի ու ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ լենինյան ոճը օրգանապես հատուկ լինի բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպություններին, բոլոր ղեկավար աշխատողներին, ինչպես նշվեց համագումարում, այս է նրանց հաջող աշխատանքի նախապայմանը։

Համագումարի առաջադրած խնդիրների նորությունն ու մասշտաբայնությունը կուսակցական կազմակերպություններից, յուրաքանչյուր ղեկավարից պահանջում են ստեղծագործական աշխատանք, կարողություն, ինչպես Լենինն էր ասում, գտնելու այնպիսի միջոցներ, եղանակներ ու մեթոդներ, որոնք ունակ են ուժերի նվազագույն ծախսումներով տալ առավել մեծ ու առավել կայուն արդյունքներ։

Լենինյան ոճի անբաժան հատկանիշն են քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Հաշվետու զեկուցումը հստակ սահմանում է, թե ինչպես պետք է օգտագործել աշխատանքում եղած թերություններն ու վրիպումները հաղթահարելու, կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում գործերը բարելավելու այդ փորձված միջոցը։

Համագումարի պահանջները հանգում են այն բանին, որ այս կամ այն կազմակերպության, այս կամ այն աշխատողի գործունեության բոլոր կողմերը օբյեկտիվ գնահատվեն, որ եղած թերությունները համակողմանի վերլուծվեն՝ դրանց վերացման նպատակով, որ թույլ չտրվի լիբերալ վերաբերմունք վրիպումների և դրանցում մեղավորների նկատմամբ, որ քննադատության հանդեպ սխալ վերաբերմունքի ամեն մի փաստ առաջ բերի կուսակցական մարմինների սուր և օպերատիվ արձագանքը։ Հենց այս բաղադրիչներն էլ փոխկապակցված և օրգանական միասնությամբ կազմում են քննադատության և ինքնաքննադատության մեթոդի բուն էությունը։

Վերջին տարիներին, հատկապես Տամբովի մարզային կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո, կուսակցության մեջ շատ աշխատանք է կատարվել։ Կուսակցական մարմիններում և կազմակերպություններում քննարկվող հարցերի նկատմամբ մոտեցումը դարձել է ավելի քննադատական։ Ավելի շատ առարկայական քննադատություն և ինքնաքննադատություն են բովանդակում զեկուցումները, կոմունիստների ելույթները։ Բարձրացել է ինչպես աշխատանքի թերությունների, այնպես էլ դրանց վերացման համար աշխատողներին ներկայացվող պահանջը։ Եվ այդ լավ է։ Դա առողջացնում է իրադրությունը կուսկազմակերպություններում, բարձրացնում նրանց մարտունակությունը։

Բայց կարո՞ղ ենք արդյոք մենք հանգստանալ և ասել, թե այստեղ մեզ մոտ արդեն ամեն ինչ կարգին է։ Հազիվ թե դա ճիշտ լիներ։ Դեռևս կան այնպիսի ղեկավարներ և անգամ առանձին ղեկավար մարմիններ, որոնք խոսքով կարծես ընդունում են, որ առանց քննադատության աշխատել չի կարելի, բայց գործով քիչ բան են անում այն զարգացնելու համար։ Երբեմն պլենումներում, ժողովներում պակասում է խստապահանջ, ինքնաքննադատական խոսքը գործերի իրական վիճակի մասին։ Զեկուցումներին ու ճառերին երբեմն տրվում է պարադային տոն, նրանցում խոսվում է միայն հաջողությունների մասին։ Որոշ աշխատողներ հիվանդագին են ընդունում քննադատությունը, փորձում են խույս տալ դրանից։ Պատահում են նաև քննադատության համար մարդկանց հալածելու դեպքեր։

Բերեմ մի այսպիսի օրինակ։ Անցյալ տարվա օգոստոսին «Պրավդա»-ն հրապարակել էր Վոլգոգրադի «Կրասնի Օկտյաբր» գործարանի մարտենյան արտադրամասի կռունկավար ընկեր Զադոնսկու հոդվածը։ Այն կոչվում էր «Խոսքը վիրավորում է, խոսքը և բուժում է»։ Հեղինակը շատ հանգիստ, գործարար տոնով և միանգամայն ինքնաքննադատաբար արծարծում է աշխատանքային կոլեկտիվում փոխհարաբերությունների, յուրաքանչյուր ձեռնարկությունում, հիմնարկությունում բարոյական առողջ կլիմա ստեղծելու հարցը։ Հոդվածում կշտամբանքի խոսք էր ասվել հերթափոխի պետի հասցեին՝ կոպտության և անտակտության համար։ Ընկեր Զադոնսկու մտքերն ու առաջարկությունները լայն արձագանք գտան։ Թերթի խմբագրությունը շատ նամակներ ստացավ։

Իսկ ինչպե՞ս արձագանքեցին այդ հոդվածին գործարանում։ Արտադրամասի պետ Պանչենկոն, կուսբյուրոյի քարտուղար Պավլովսկին և արհմիության արտադրամասային կոմիտեի նախագահ Գրիցենկոն խոսքով ընդունեցին բանվորի դիտողությունների ճշտությունը։ Իսկ իրականում նրանք սկսեցին ամեն կերպ ճնշել նրան։ Բանն այնտեղ հասավ, որ ընկեր Զադոնսկուն ներկայացվեց միանգամայն անհիմն, բացահայտորեն հորինված մեղադրանք և դրվեց նրան կուսակցությունից վտարելու հարցը։ ՍՄԿԿ Վոլգոգրադի քաղկոմի և մարզկոմի միջամտությունից հետո դրությունը շտկվեց, իսկ քննադատությունը հալածողները խստորեն պատժվեցին։

Նման փաստերի դեմ հարկավոր է հետևողականորեն ու անհաշտ պայքարել, ինչպես ասված է կուսակցության կանոնադրության մեջ, վճռական հակահարված տալ քննադատությունը ճնշելու բոլոր փորձերին։

Որոշ կուսկազմակերպություններում քննադատական դիտողությունների և առաջարկությունների նկատմամբ ցուցաբերում են ձևական, բյուրոկրատական վերաբերմունք։ Միևնույն թերությունների մասին երբեմն խոսում են տարիներով, իսկ դրանք վերացնելու համար գործնական ոչ մի միջոց չեն ձեռնարկում, և ոչ ոք դրա համար պատասխանատվություն չի կրում։ Դա նվազեցնում է քննադատության գործունեությունը, մարդկանց մեջ սպանում գործին ակտիվ միջամտելու ցանկությունը, ծնում անտարբերություն։ Իսկ չէ որ, եթե ուղղակի ասենք, դա ևս քննադատությունը ճնշելու ձևերից մեկն է։

Կուսակցական կոմիտեները պետք է ավելի վճռականորեն հանդես գան նման երևույթների դեմ, կադրերին համակեն քննադատության նկատմամբ ուշադիր վերաբերմունքի ոգով։ Քննադատության նկատմամբ վերաբերմունքը պետք է լինի կադրերի հասունության գնահատման կարևոր չափանիշը։

Լենինյան ոճի հաստատման, կուսակցական ղեկավարման մակարդակի բարձրացման համար մեծ նշանակություն ունի վերահսկողության և կատարման ստուգման ուժեղացումը։ Համագումարին տրված Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ խորապես բացահայտված է այդ պրոբլեմի էությունը և այն, թե ինչպես պետք է վերաբերվել դրա լուծմանը։ Կարևորն այստեղ առաջադրված դրույթների իրագործումն է պրակտիկայում։ Այժմ բոլոր կուսակցական կոմիտեներում ձեռնարկվում են կոնկրետ միջոցներ, որոնք ուղղված են վերահսկողության և կատարման ստուգման բարելավմանը։ Ի՞նչ է հարկավոր նկատի ունենալ դրանք իրականացնելիս։

Ամենից առաջ անհրաժեշտ է անկյունաքար դարձնել փաստացի վերահսկողությունը որոշումների կատարման նկատմամբ։ Վերահսկողությունը կարող է իրոք արդյունավետ լինել, եթե այն օրգանապես զուգակցվում է կազմակերպչական կենդանի աշխատանքի հետ։ Խորը վերլուծելով այդ գործի դրվածքը՝ կուսակցական կոմիտեները, կազմակերպական-կուսակցական աշխատանքի նրանց բաժինները պետք է մանրամասն ամփոփեն, գործնականորեն ստուգեն, ամեն կերպ կատարելագործեն ու արմատավորեն վերահսկողության առավել ներգործուն ձևերը, որոնք հնարավորություն են տալիս լավագույն ձևով ապահովել ստուգման և ընդունվող որոշումների կատարման կազմակերպման սերտ զուգակցումը։

Վերահսկողությունը և կատարման ստուգումը կատարելագործելու վերա-



բերյալ համագումարի ցուցումներն անհրաժեշտ է վերածել կոնկրետ գործերի։ Կարևոր է այս ասպարեզում բարձրացնել յուրաքանչյուր կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավարի, յուրաքանչյուր կուսակցական մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության ակտիվությունը։

Հանրահայտ է, թե կուսակցության մեջ ինչպիսի լայն արձագանք գտավ Թբիլիսիի կուսքաղկոմի աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի փետրվարի 22-ի որոշումը։ Դա սուր և սկզբունքային փաստաթուղթ է։ Այնտեղ նշված էին խոշոր սխալներ ու թերություններ կազմակերպական ու քաղաքական աշխատանքում, տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ։ Եվ պետք է ասել, որ Վրաստանի կոմկուսակցության Կենտկոմը միանգամայն ճիշտ հետևություններ արեց ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից, այն դրեց ամբողջ հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության հիմքում։

Հենվելով Թբիլիսիի քաղկոմի վերաբերյալ եղած որոշման վրա, Վրաստանի ԿԿ Կենտկոմը քննադատաբար վերլուծեց գործերի վիճակը հանրապետությունում, սահմանեց կուսակցական կազմակերպությունների դիրքորոշումը սկզբունքային բոլոր հարցերում։ Ամրապնդվեց կուսակցական կոմիտեների, սովետական և տնտեսական մարմինների ղեկավարությունը։

Այժմ արդեն ակներև է, որ այդ տարիներին հանրապետությունում հիմնականում ստեղծվել է հանրապետականից մինչև շրջանային օղակի կադրերի լավ կորիզ։ Բարելավվել է իրավիճակը կուսակցական կազմակերպություններում։ Բոլոր հարցերին սթափ, քննադատական վերաբերմունքը, ղեկավարների, բոլոր կոմունիստների նկատմամբ բարձր պահանջկոտությունը դառնում են կուսակցական կազմակերպությունների կյանքի ու գործունեության նորմ։ Էական է, որ այդ աշխատանքը կատարվում է հրապարակավ, եթե կարելի է ասել՝ ողջ հանրապետության աչքի առաջ, արժանանում է կոմունիստների, բոլոր ազնիվ աշխատողների մեծ պաշտպանությանն ու հավանությանը։

Վրաստանի կոմկուսակցության Կենտկոմի, բոլոր կուսակցական կազմակերպությունների նպատակային ու հետևողական գործունեության, ՍՄԿԿ Կենտկոմի ու սովետական կառավարության աջակցության և օգնության շնորհիվ, Վրացական ՍՍՀ-ն կարողացավ հաղթահարել խիստ ետ մնալը՝ նախկինում և բոլոր հիմնական ցուցանիշներով հասնել իններորդ հնգամյակի դիրեկտիվներով նախատեսված մակարդակին։ Նկատելիորեն բարելավվել է հանրապետության բարոյա-քաղաքական մթնոլորտը։ Աճել է հանրապետության կուսակցական կազմակերպության հեղինակությունը, ուժեղացել նրա ղեկավարող ու կազմակերպող ներգործությունը սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի բոլոր կողմերի վրա։

Վերջերս ընկեր Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում ընդունեց Վրաստանի կուսակցական կազմակերպության Թբիլիսիի քաղկոմի վերաբերյալ կայացած որոշման կատարման ընթացքի մասին։ Համակուսակցական մեծ նշանակություն ունեցող նոր որոշման մեջ առաջադրված սկզբունքային դրույթները զարգացնում և կոնկրետացնում են կուսակցության XXV համագումարի որոշումները։ Կենտրոնական կոմիտեն դրական գնահատական տվեց Վրաստանում կատարված աշխատանքին, պաշտպանեց այն դրական միտումները, որոնք հստակորեն դրսևորվեցին հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության մեջ։ Կենտկոմն ուշադրությունը հրավիրեց նաև չլուծված հարցերի, դեռևս եղած թերությունների, դժվարությունների վրա, ցույց տվեց դրանց հաղթահարման ուղիները։ Այդ ամենը փաստաթղթին տալիս է մոբիլիզացնող մեծ ուժ և լուրջ օգնություն է կուսակցական կազմակերպությանը նրա հետագա ողջ աշխատանքում։ Այս որոշումը վերստին վկայում է, որ ՍՄԿԿ Կենտկոմն օբյեկտիվ և համակողմանի է գնահատում տեղական կուսակցական մարմինների աշխատանքը, նկատում է թերություններն ու վրիպումները, տեսնում նրանց հաջողություններն ու նվաճումները, ամեն կերպ պաշտպանում այն նորը, առաջավորը, որ ծնում է կյան-

քր, կուսակցական աշխատանքի պրակտիկան: Ի դեպ, հենց այս է կուսակցական վերահսկողության էական հատկանիշներից մեկը:

Մշտապես հետևելով կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքներին՝ ՍՄԿԿ-ն միշտ էլ առաջնահերթ նշանակություն է տվել և տալիս է կադրերի հետ տարվող աշխատանքին: Կադրային քաղաքականությունը, ինչպես շեշտեց XXV համագումարը, այն հզոր լծակն է, որի միջոցով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա:

Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ խոր կերպով բացահայտված է կադրային քաղաքականության բովանդակությունն արդի փուլում, տրված է կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության ասպարեզում կատարված աշխատանքի մանրամասն վերլուծությունը, հստակորեն ձևակերպված են ժամանակակից ղեկավարին ներկայացվող պահանջները: Համագումարի դրույթների պրակտիկ իրականացումը կուսակցական կազմակերպություններին հնարավորություն կտա կադրերի հետ տարվող աշխատանքը բարձրացնել նոր, ավելի բարձր մակարդակի: Ընդսմին, հարկավոր է այսուհետև ևս ղեկավարվել կադրերին ըստ քաղաքական ու գործարար հատկանիշների ընտրելու անհրաժեշտության մասին լենինյան ցուցումով:

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց քաղաքականապես հասուն, մարդկանց հետ տարվող աշխատանքի փորձ ունեցող, ժողովրդական տնտեսության ակտիվ մասնագետներին ղեկավար կուսակցական աշխատանքի առաջ քաշելու հարցին: Վերջին տարիներին այս պլանով շատ բան է արվել: Այժմ կուսակցության քաղկոմների և շրջկոմների քարտուղարների 99,2 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, այդ թվում 60 տոկոսը արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետներ են: Կարևոր է այսուհետ ևս բարելավել աշխատանքը մասնագետների հետ, մշտապես հոգալ նրանց քաղաքական աճի համար, հասնել այն բանին, որ նրանք ակտիվորեն մասնակցեն սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությանը:

Կյանքը ցույց է տալիս, որ կուսակցության կադրային քաղաքականությունը, որը խարսխված է աշխատողների նկատմամբ վստահության, նրանց նկատմամբ սրտացավ ու հոգատար վերաբերմունքի վրա, զուգակցված բարձր պահանջկոտության և հանձնարարված գործի համար յուրաքանչյուրի պատասխանատվության հետ, առավել լիովին է համապատասխանում կոմունիստական շինարարության շահերին:

Կուսակցության XXIII և XXIV համագումարների որոշումներին համապատասխան ձեռնարկված միջոցները հնարավորություն տվեցին վերջ տալ աշխատողների չարդարացված տեղափոխություններին և հաճախակի փոփոխություններին: Դա, սակայն, ամենևին չի նշանակում, թե կադրերն ամրապնդելու պատրվակով կարելի է ղեկավար պաշտոններում թողնել նրանց, ովքեր չեն կարողանում կատարել իրենց պարտականությունները, ցուցաբերում են անպատասխանատվություն, ապրում են գիտելիքների հին պաշարով: Չի կարող կուսակցական ղեկավար լինել նա, նշվեց համագումարում, ով կորցնում է իր գործունեությունը քննադատաբար գնահատելու ունակությունը, կտրվում է մասսաներից, ծնում շողոքորթներ ու քծնողներ, զրկվում է կոմունիստների վստահությունից:

Կուսակցական կոմիտեներում հաստատվել է այնպիսի պրակտիկա, երբ կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցերը լուծվում են կոլեգիալ կերպով, աշխատողների քաղաքական ու գործարար հատկանիշների համակողմանի քննարկման միջոցով: Այդ հնարավորություն է տալիս կադրերի գնահատման հարցում խուսափել սուբյեկտիվիզմից, զերծ մնալ անձնական նվիրվածության ազգակցական ու բարեկամական հարաբերությունների հատկանիշներով նրանց առաջ քաշելուց:

Վերջին տարիներին տեղական կուսակցական մարմինները օգտակար աշխատանք են կատարել իրենց նոմենկլատուրան կարգավորելու ասպարեզում: Այդ միջոցառումն իրեն արդարացրեց: Հարկավոր է ավելի լավ վերլուծել նոմենկլատուրայի կազմը, հոգ տանել լավ ռեզերվ ստեղծելու մասին, հետևել, որ



ապահովվի փորձված և երիտասարդ աշխատողների ճիշտ զուգակցումը, որ ղեկավար կադրերը համալրվեն լավագույն մասնագետների, բանվորների, կոլտնտեսականների, կանանց հաշվին:

Կյանքին համաքայլ ընթանալու համար մեր բոլոր կադրերը պետք է միշտ սովորեն, բարձրացնեն իրենց գաղափարական-տեսական մակարդակը, տիրապետեն կառավարման արվեստին ու ժամանակակից մեթոդներին, գիտության ու առաջավոր պրակտիկայի նվաճումներին: Այս խնդիրները լուծելու համար մեզ մոտ ստեղծվել և գործում է կադրերի պատրաստման ու վերապատրաստման ճյուղավորված սիստեմ: Այն լավ արդյունքներ է տալիս, և այդ մասին ևս խոսվեց XXV համագումարում: Դրա հետ մեկտեղ համագումարն անհրաժեշտ համարեց է՛լ ավելի կատարելագործել այդ կարևոր գործը: Այժմ արդեն որոշակի աշխատանք է կատարվում այս առումով:

## ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ բացահայտված է սովետական հասարակության քաղաքական սիստեմի համակողմանի զարգացման, պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների ակտիվության բարձրացման, նրանց նախաձեռնության խթանման նպատակով կուսակցության ծավալած բազմակողմանի գործունեության էությունը:

Պետական շինարարության բնագավառում կուսակցությունը հիմնական խնդիրն է համարում սովետների աշխատանքի հետագա կատարելագործումը: Այս առումով վերջին տարիներին քիչ բան չի արվել: Ամենից առաջ լուրջ դեր կատարեց և շարունակում է կատարել XXIV համագումարի որոշման համապատասխան ընդունված օրենքը դեպուտատների ստատուսի մասին: Այդ բանն զգացվում է ամեն ինչում: Է՛լ ավելի է բարձրացել ժողովրդի ընտրյալների հեղինակությունը, ակտիվացել նրանց գործունեությունը: Դեպուտատների նախաձեռնությամբ լուծվում են բազմաթիվ կարևոր հարցեր, որոնք մեծ մասամբ կապված են ընտրողների նակազների հետ և արտացոլում են ժողովրդի, մեր ամբողջ կյանքի պահանջներն ու կարիքները:

Սովետների աշխատանքին դեպուտատների, այդ թվում և կոմունիստ դեպուտատների անմիջական մասնակցության ներգործուն ձև են դարձել մշտական հանձնաժողովները: Միայն տեղական սովետներում ստեղծվել են 328 հազար մշտական հանձնաժողովներ, որոնց կազմում կան 1 միլիոն 786 հազար դեպուտատներ՝ նրանց ընդհանուր թվի գրեթե 81 տոկոսը: Բացի դրանից, սովետներն իրենց շուրջը համախմբում են մոտ 30 միլիոն հասարակական ակտիվիստների, որոնք կամավոր ու անշահախնդիր կերպով օգնում են պետական կառավարման բարդ ու պատասխանատու գործին: Սա մեծ ուժ է, և այն պետք է հմտորեն օգտագործել:

Դեպուտատների ստատուսի մասին օրենքի ընդունումը լրիվ արդարացրեց իրեն: Օրենքը կենսագործվում և տալիս է լավ արդյունքներ: Անհրաժեշտ է այսուհետ ևս հետևել, որ անվերապահորեն կատարվեն նրա բոլոր դրույթներն ու պահանջները: Այստեղ պետք են կուսակցական աչք, կուսակցական պահանջկոտություն և հոգատարություն:

Անցած տարիների փորձը լիովին հաստատեց Կենտկոմի քաղբյուրոյի նախաձեռնությամբ իրականացված գյուղական և ավանային, շրջանային և քաղաքային սովետների իրավունքների և նյութական հնարավորությունների ընդլայնման ճշտությունը: Դրա շնորհիվ նրանց աշխատանքը նոր թափ ստացավ: Այժմ XXV համագումարի ցուցումին համապատասխան՝ հարկավոր է մշակել և ընդունել երկրամասային, մարզային և օկրուգային սովետների իրավասությունը սահմանող օրենքներ:

Համագումարը նշեց, որ սովետները պետք է մեծ դեր կատարեն տասներորդ հնգամյա պլանի կատարումը կազմակերպելու գործում: Դրա համար

անհրաժեշտ է, որ ավելի լայն թափ ու խորություն ձեռք բերի նրանց կազմակերպչական աշխատանքը, ավելի արդյունավետ դառնա վերահսկողությունը գործադիր մարմինների գործունեության, ընդունված որոշումների, նշված պլանների ու միջոցառումների կատարման նկատմամբ։

Նման ղեկավարման կարևորագույն հատկանիշը մշտական հոգատարությունն է նրանց կազմի բարելավման համար։ Այս իմաստով կուսակցական կոմիտեները մեծ աշխատանք են կատարում։ Սովետների կազմը ակտիվորեն համալրվում է լավագույն բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, կանանց ու երիտասարդության ներկայացուցիչների հաշվին։

Իր գլխավոր խնդիրներից մեկը կուսակցությունը համարում է հասարակական կազմակերպությունների ղեկավարման մշտական բարելավումը։ Գործնականորեն ընդգրկելով երկրի ողջ չափահաս բնակչությանը, այդ կազմակերպությունները կազմում են մեր քաղաքական սիստեմի անբաժանելի մասը, հանդիսանում հասարակության գործերի կառավարմանը քաղաքացիների մասնակցության կարևոր միջոց։

Համագումարը սկզբունքային դրույթներ սահմանեց արհմիությունների ամբողջ աշխատանքի հետագա բարելավման վերաբերյալ՝ այն հաշվով, որ այդ աշխատանքը ավելի լրիվ համապատասխանի նրանց իրավունքներին և պատասխանատվության աստիճանին։ Իրականացնելով արհմիությունների ղեկավարումը, ձգտելով բարձրացնել նրանց ամբողջ գործունեության մակարդակը, նրանց շարունակ նպատակամղելով կոմունիստական շինարարության կենսական խնդիրների լուծմանը, մեր կուսակցությունը ելնում է այն բանից, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում զգալիորեն ընդլայնվում են արհմիությունների հիմնական ֆունկցիաները։

Արհմիությունները, նշեց համագումարը, կոչված են ամենից առաջ պաշտպանելու աշխատավորության իրավունքներն ու շահերը, ակտիվորեն զբաղվելու կենցաղային, սոցիալական հարցերով։ Բայց նրանք այդ բնագավառում շատ բան չէին կարողանա անել, եթե չզարգանար արտադրությունը, եթե չամրապնդվեր աշխատանքային կարգապահությունը, չաճեր աշխատանքի արտադրողականությունը։ Արհմիությունների կարևոր խնդիրը եղել ու մնում է սոցիալիստական մրցության ըստ ամենայնի զարգացումը, բանվորների, կոլտնտեսականների ու ծառայողների աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացումը, նրանց լայն ներգրավումը արտադրության կառավարման ոլորտը։

Այս կապակցությամբ մեծ նշանակություն ունեն համագումարի այն ցուցումները, որոնք ուղղված են արտադրական արհմիությունների կառուցվածքի, արտադրական միավորումներում նրանց աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, այդ արհմիությունների ղեկավար մարմինների իրավունքների ավելի հստակ սահմանմանը։ Բանն այն է, որ արհմիութենական մարմինների ներկայիս կառուցվածքը անչափ բարդ է ու բազմաստիճան։ Դրա հետևանքով նրանց աշխատանքում հաճախ նկատվում են կրկնորդում և զուգահեռականություն։ Ինչպես հայտնի է, արհմիություններում կան ճյուղային և տերիտորիալ մարմիններ։ Ընդ որում, վերջին ժամանակներս ավելի շատ ուշադրություն էր նվիրվում տերիտորիալ մարմիններին։ Հավանաբար, հարկավոր է ձգտել, որ ճյուղային արհեստակցական միությունների կառուցվածքը ավելի լրիվ համապատասխանի ժողովրդական տնտեսության կառավարման կառուցվածքին, բարձրացնել արհմիությունների կենտկոմների դերն ու պատասխանատվությունը, որոնք իրականում պետք է դառնան հեղինակավոր ու ազդեցիկ մարմիններ։

ՍՄԿԿ XXV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց լենինյան կոմերիտմիության աշխատանքին, մեր երիտասարդության դաստիարակությանը։ Բարձր գնահատելով կոմերիտմիության մասնակցությունը տնտեսական և կուլտուրական շինարարությանը, համագումարը միևնույն ժամանակ նշեց, որ ինքը՝ կյանքը, առավել բարձր պահանջներ է ներկայացնում նրան։

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ շարունակ ուժեղացնել



իրենց ազդեցությունը կոմերիտմիության գործունեության բոլոր կողմերի վրա, ապահովել երիտասարդության գաղափարա-քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնությունը՝ հաշվի առնելով նրա տարբեր խմբերի առանձնահատկությունները։ Դժբախտաբար, դեռևս կան կուսակցական կոմիտեներ, որոնք խորամուխ չեն լինում կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի, նրանց ներքին կյանքի մեջ, չեն վերլուծում այնտեղ տեղի ունեցող պրոցեսները։ Իսկ այդ հանգեցնում է թերացումների դաստիարակության գործում։

Կուսակցական կոմիտեները պետք է մշտապես զբաղվեն կոմերիտմիության հոգսերով, պաշտպանեն նրա հայրենասիրական նախաձեռնությունները, հետևեն, որ պետական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները հաշվի նստեն կոմերիտմիության առաջ քաշած հարցերի հետ՝ հատկապես երիտասարդության աշխատանքի, կենցաղի ու հանգստի կազմակերպման բնագավառում։

Հարկ է ուշադրություն դարձնել նաև այսպիսի մի պրոբլեմի վրա. ամեն տարի երկրում ինքնուրույն աշխատանքային կյանք են մտնում միլիոնավոր երիտասարդներ։ Դա բացառիկ կարևոր ու պատասխանատու փուլ է երիտասարդի կյանքում, նրա անձի, բնավորության ձևավորման գործում։ Այստեղ ևս շատ բան պայմանավորված է կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործունեությամբ։ Նրանք կոչված են՝ մշտապես հոգ տանելու պատանիների ու աղջիկների մասին, օգնելու յուրաքանչյուրին՝ ընտրել իսկական գործ, ձեռք բերել մասնագիտություն, նրանց համար ստեղծելու բեղմնավոր, ստեղծագործական աշխատանքի անհրաժեշտ պայմաններ։ Մի խոսքով, անել ամեն ինչ, որպեսզի երիտասարդներն ակտիվորեն ու գիտակցորեն մասնակցեն կոմունիստական շինարարությանը։

Կուսակցական մարմինների ամենօրյա ուշադրության առարկան մնում է կուսակցական կորիզի ամրապնդումը կոմերիտմիության մեջ։ Կոմերիտական կազմակերպություններում աշխատող կոմունիստների թիվը վերջին հինգ տարում գրեթե կրկնապատկվել է և այժմ հասնում է մեկ միլիոն մարդու։ Հարկավոր է մշտապես հետաքրքրվել կոմերիտական ղեկավար մարմիններում ընտրված կոմունիստների աշխատանքով, ամենայն աջակցություն ցույց տալ նրանց, բարձրացնել պատասխանատվությունն այդ կարևոր կուսակցական հանձնարարության կատարման համար։

XXV համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են կոմերիտական կազմակերպությունների կազմակերպական-քաղաքական հետագա ամրապնդում։ Զգալի չափով դրան է ծառայում կոմերիտական փաստաթղթերի փոխանակումը։ Կուսակցական կոմիտեները պարտավոր են անհրաժեշտ օգնություն ցույց տալ կոմերիտմիությանը՝ այդ կամպանիան կազմակերպված ավարտելու համար։

ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների հաջող իրականացման գործում կարևոր դեր ունի կուսակցական ապարատը։ Նրա աշխատանքի բարելավման հարցերը շարունակ գտնվում են Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի և քարտուղարության տեսադաշտում։ Այդ հարցերին մեծ նշանակություն է տալիս անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ Նա ամեն օր հոգ է տանում, որ Կենտկոմի բաժինները, ամբողջ կուսակցական ապարատը աշխատեն հստակ ու համաձայնեցված, որ բարձրանան աշխատողների հեղինակությունը, նրանց պատասխանատվությունը ոչ միայն կոնկրետ տեղամասի, այլև ընդհանուր գործի համար։

Այս իմաստով սկզբունքորեն կարևոր նշանակություն ունեն Լեոնիդ Իլյիչի ելույթները 1974 և 1976 թվականներին ՍՄԿԿ Կենտկոմում հրավիրված մարզկոմների, երկրկոմների և հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների աշխատողների խորհրդակցություններում։ Այդ ելույթներում լենինյան պարզությամբ վերհանված է ապարատի աշխատողների դերը կուսակցական կոմիտեների կյանքում ու գործունեության մեջ։ Մենք, ասել է նա, կուսակցական ապարատում հարգում ենք յուրաքանչյուր աշխատողի։ Մեծ պատիվ

է աշխատել կուսակցական ապարատում՝ ամեն մի ստորաբաժանում և կուսակցական ամեն մի մարմնում։

Կուսակցական ապարատի աշխատողները կոչված են ավելի խոր ուսումնասիրել կյանքը, կարողանալ վերլուծել ու ընդհանրացնել իրական փաստերն ու երևույթները, ընդլայնել և ամրապնդել կուսակցական մարմինների կապերը կոմունիստների և բոլոր աշխատավորների հետ, շարունակ կատարելագործել վերահսկողությունն ու կատարման ստուգումը։ Բնութագրելով ժամանակակից կուսակցական աշխատողին, Լենինը Իլյիչը նշում է, որ նա պետք է ունենա այնպիսի անկապտելի հատկություններ, ինչպես բարձր գաղափարայնությունը, սկզբունքայնությունը, գործարարությունը, ճշտապահությունը ամեն ինչում։

Կցանկանայի համառոտակի շոշափել նաև այնպիսի մի հարց, ինչպես կուսակցական շինարարության պրոբլեմների մշակումն է, կուսակցական աշխատանքի փորձի ընդհանրացումն ու տարածումը։ Վերջին տարիներին այս ասպարեզում մեզ մոտ շատ բան է արվել։ Լույս են տեսել Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի երկերի, կուսակցության որոշումների և փաստաթղթերի թեմատիկ հրատարակությունները։ Կուսակցական կադրերի համար սեղանի գիրք են դարձել ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, մասնավորապես «Լենինյան կուրսով», «Կուսակցական շինարարության հրատապ պրոբլեմների մասին» ժողովածուները։

Ամեն տարի կենտրոնական հրատարակչությունները, հատկապես Քաղհրատը, բավական քանակությամբ գրականություն են լույս ընծայում կուսակցական աշխատանքի տեսության ու պրակտիկայի հարցերի շուրջ։ Այս թեմատիկային սկսել են ավելի շատ ուշադրություն նվիրել տեղերում։

Կուսկազմակերպությունների առաջավոր փորձի ընդհանրացմանն ու տարածմանը մեծ չափով նպաստում են կուսակցական կոմիտեներում ստեղծված կուսակցական աշխատանքի կաբինետները, անցկացվող գիտապրակտիկ կոնֆերանսները, սոցիոլոգիական հետազոտությունները, կուսակցական ակտիվի դպրոցներն ու սեմինարները։ Նշանակալի է մասսայական ինֆորմացիայի միջոցների, հատկապես մամուլի կատարած աշխատանքը։

Ամենից առաջ պետք է նշել կուսակցական աշխատանքի հարցերի սիստեմատիկ լուսաբանումը «Պրավդա» թերթում։ Շատ բան են անում նաև «Սովետսկայա Ռոսիա», «Սելսկայա ժիզն» թերթերը, «Կոմունիստ» և «Պարտիյնայա ժիզն» ամսագրերը, ինչպես նաև տեղական շատ թերթեր ու ամսագրեր։

Կուսակցական տարբեր օղակներում կուտակված պրակտիկ փորձը մեր վիթխարի սեփականությունն է, այն հարստացնում է ողջ կուսակցությանը, օգնում ստեղծագործաբար լուծելու կյանքի առաջադրած հարցերը։ Անհրաժեշտ է մեկ առ մեկ ժողովել ուշադրության արժանի ողջ արժեքավորը, հասնել այն բանին, որ այն լայնորեն տարածվի, ստեղծագործաբար օգտագործվի կուսակցական կազմակերպությունների, բոլոր կադրերի կողմից։

Կուսակցության հետագա զարգացման և ամրապնդման վերաբերյալ XXV համագումարի որոշումների կենսագործումը կնպաստի հասարակության մեջ նրա ղեկավար և ուղղություն տվող դերի անշեղ բարձրացմանը, մասսաների շրջանում կատարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բարելավմանը, կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման համար կոմունիստների, բոլոր աշխատավորների մոբիլիզացմանը։

«Коммунист», № 11, июль, 1976 г.

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ ՆՈՐ ԷՏԱՊՈՒՄ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ իր ամբողջ հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը խարսխում է մարքս-լենինյան տեսության հաստատուն հիմքի վրա։ «Մարքսիզմ-լենինիզմը,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում,— միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար։ Նա մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղությունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում»։ Հենց այդ պատճառով էլ կուսակցությունը բացառիկ կարևոր նշանակություն է տալիս կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքս-լենինյան կրթությանը։ Քաղաքական ուսուցումը սովետական մարդկանց զինում է Մարքսի, Էնգելսի, Լենինի գաղափարներով, ՍՄԿԿ պատմական փորձով, նրա քաղաքականության պարզորոշ ըմբռնմամբ, կոմունիստական գաղափարախոսության ու բարոյականության, սոցիալիստական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները պաշտպանելու, հասարակական կյանքի նոր երևույթները գիտականորեն գնահատելու և պրակտիկ գործունեության համար ճիշտ հետևություններ անելու ունակությամբ։ Գաղափարա-տեսական ուսուցման բարելավումը կուսակցության շարքերի առավել համախմբման, աշխատավոր մասսաների շրջանում կուսակցության անդամների հեղինակության, կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացման կարևոր գործոն է։

ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ քաղաքական լուսավորության ասպարեզում քիչ բան չի արված։ Կուսակցական կրթության սիստեմում սովորում են մոտ 20 միլիոն մարդ, այդ թվում մոտ յոթ միլիոն անկուսակցականներ։ Մարքսիզմ-լենինիզմի մասսայական ուսումնասիրությունը հասարակական գիտակցության զարգացման կարևոր առանձնահատկությունն է արդի էտապում։ Սակայն, ինչպես կուսակցական-քաղաքական աշխատանքի այլ բնագավառներում, այստեղ ևս ծառանում են բարդ խնդիրներ։ «...Կարևոր է,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— որ, չթուլացնելով ուշադրությունը կոմունիստների և անկուսակցականների ավելի ու ավելի լայն զանգվածներին կուսակցական ուսուցման մեջ ընդգրկելու նկատմամբ, հատուկ հոգատարություն ցուցաբերվի այդ աշխատանքի բովանդակության նկատմամբ, նրա տեսական մակարդակի բարձրացման նկատմամբ»։

Այդ գործունեությունն առավել կարևոր ու հրատապ է դառնում զարգացած սոցիալիզմի պայմաններում։ Կուսակցության և ժողովրդի հեղափոխական-վերափոխիչ գործունեության խորությունն ու թափը, գիտության և տեխնիկայի, էկոնոմիկայի և սոցիալական հարաբերությունների զարգացումը, սովետական մարդկանց գիտակցության և նյութական բարեկեցության աճը, խոշոր տեղաշարժերը միջազգային իրադրության մեջ՝ հօգուտ սոցիալիզմի, և ռևիզիոնիստական գաղափարախոսության դեմ հետագա պայքարի անհրաժեշտությունը հարաճուն պահանջներ են ներկայացնում կուսակցական կազմակերպություն-

ներին՝ կոմունիստների, լայն մասսաների գաղափարա-քաղաքական դաստիարակության բնագավառում:

Մարքս-լենինյան կրթության գործի հետագա բարելավումն է կուսակցության Կենտրոնական կոմիտեի ընդունած «Կուսակցական ուսուցման խնդիրները ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի տակ» որոշման նպատակը: Կենտկոմը կուսակցական ուսուցման հարցերին հատուկ ուշադրություն է նվիրում՝ ղեկավարվելով Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ կուսակցությունը պարտավոր է «իր գործունեության մեջ առաջին պլանի վրա դնել իր անդամների շարքերում ամբողջական և հետևողական հեղափոխական աշխարհայեցության դաստիարակումը» (Полн. собр. соч., т. 7, стр. 253):

Որոշման մեջ ընդգծվում է մարքսիզմ-լենինիզմի, որպես միասնական ինտերնացիոնալիստական ուսմունքի, հիմնական սկզբունքների, ՍՄԿԿ պատմական փորձի, տեսության մեջ ներդրված ստեղծագործական այն ավանդի խոր յուրացման անհրաժեշտությունը, որ բովանդակում են կուսակցության վերջին համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, ընկ. Լ. Ի. Բրեժնևի և կուսակցության մյուս ղեկավար գործիչների ելույթները, միջազգային կոմունիստական շարժման փաստաթղթերը: Որոշման մեջ ընդգծված է, որ կուսակցության տեսության ու քաղաքականության ուսումնասիրությունն առավել արդյունավետ է այն ժամանակ, երբ տարվում է օրգանական միասնության մեջ, սերտորեն կապված է կոմունիստական շինարարության պրակտիկայի, ՍՄԿԿ միջազգային գործունեության, նրա գաղափարախոսական պայքարի հետ:

Գիտելիքների ձեռքբերումը պետք է օգնի մարդկանց՝ գրավելու ակտիվ կենսական դիրք, դիմելու ակտիվ գործունեության՝ սոցիալիստական հասարակության զարգացման կենսական պրոբլեմները լուծելու, այդ հասարակությունն աստիճանաբար տանելու դեպի կոմունիստական ֆորմացիա:

Կենտրոնական կոմիտեն կուսակցական կազմակերպությունների և պրոպագանդիստների առաջ խնդիր դրեց՝ վճռականապես հաղթահարել տեղ-տեղ դրսևորվող վերացական-լուսավորական և նեղգործնական վերաբերմունքը կուսակցական ուսուցմանը, պարապմունքները կազմակերպել այնպես, որ ունկնդիրները սովորեն յուրաքանչյուր հարց դիտել այն տեսանկյունից, թե ինչպես է մարքսիզմ-լենինիզմը տեսականորեն լուծում այդ հարցը, ինչպես է կուսակցությունը ձևակերպում այն որպես քաղաքական խնդիր և ինչպիսի ուղիներ են նախատեսվում կոնկրետ պայմաններում դրա լուծման համար:

ՍՄԿԿ Կենտկոմը սույն թվականի հուլիսին հրավիրեց միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների, կուսակցության երկրամասային և մարզային կոմիտեների պրոպագանդայի և ագիտացիայի բաժինների վարիչների խորհրդակցություն, որին մասնակցում էին միութենական հանրապետությունների կոմկուսակցությունների կենտկոմների քարտուղարներ, ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատողներ, կենտրոնական գաղափարախոսական հիմնարկությունների և մամուլի օրգանների ղեկավարներ: «Կենտրոնական կոմիտեի՝ «Կուսակցական ուսուցման խնդիրները ՍՄԿԿ XXV համագումարի լույսի տակ» որոշման կատարման վերաբերյալ կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» խորհրդակցությունում զեկուցմամբ հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Վ. Զիմյանինը: Խորհրդակցության մասնակիցները կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման դրույթների ու հետևությունների և նշված որոշման լույսի տակ համակողմանիորեն քննարկեցին կուսակցական ուսուցման կատարելագործման հարցերը: Քննարկվեցին քաղաքական և տնտեսական կրթության ներգործունության բարձրացման, երիտասարդության գաղափարա-քաղաքական դաստիարակության բարելավման, պրոպագանդիստական կադրերի պատրաստման, մարքս-լենինյան տեսության և կուսակցության քաղաքականության պրոպագանդայում մասսայական ինֆորմացիայի միջոցների դերի ուժեղացման ուղիները:

Կուսակցական պրոպագանդայի հարցերին մեծ ուշադրություն նվիրեց



սովետական բանակի և ռազմածովային նավատորմի քաղմարմինների ղեկավար աշխատողների հուլիսի սկզբին կայացած գիտագործնական կոնֆերանսը, որ լսեց սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ, բանակի գեներալ Ա. Ա. Եպիշևի «ՍՄԿԿ XXV համագումարը կոմունիստական կուսակցության ղեկավար դերի առավել բարձրացման մասին և կուսակցական շինարարության հարցերը բանակում ու նավատորմում» զեկուցումը: Կոնֆերանսում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ Դ. Ֆ. Ուստինովը:

Առաջիկա տարիներին մարքս-լենինյան կրթության սիստեմի գլխավոր խնդիրը ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերի ու նյութերի խոր ուսումնասիրությունն է: Ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ և համագումարի մյուս փաստաթղթերում ստեղծագործաբար զարգացվեցին մարքս-լենինյան ուսմունքի կարևորագույն դրույթները: Այդ, ըստ էության, գիտական կոմունիզմի տեսության մի նոր գլուխ է, կուսակցության արդի ներքին ու արտաքին քաղաքականության հիմքը: Առանց դրան տիրապետելու այսօր անհնար է լինել կուսակցական քաղաքականության կենսագործման գիտակից մարտիկ:

Լենինյան կուսակցության XXV համագումարը համաշխարհային պատմական նշանակություն ունեցող իրադարձություն է: Այն ողջ աշխարհին ցույց տվեց սովետական երկրի մեծագործությունների վսեմությունը, փայլուն կերպով ցուցադրեց կոմունիստների, ամբողջ ժողովրդի հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, սոցիալիստական ինտերնացիոնալիզմին, նրանց միաձույլ համախմբվածությունը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի Քաղբյուրոյի շուրջը, ջերմ հավանությունը կուսակցության լենինյան գլխավոր կուրսին և դրա միահամուռ համաժողովրդական պաշտպանությունը: Համագումարը կուսակցությանն ու ժողովրդին զինեց քաղաքական հատուկ դիրքորոշմամբ, հանուն կոմունիստական հասարակության կառուցման, հայրենիքի քաղաքական, տնտեսական և պաշտպանական հզորության, նրա միջազգային դիրքերի ավելի ամրապնդման մղվող պայքարի ստրատեգիայով և տակտիկայով:

Կուսակցության ծրագրային փաստաթուղթ է հանդիսանում ՍՄԿԿ XXV համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցումը: Դրանում տրված է արդիականության կարևորագույն հասարակական պրոցեսների խոր տեսական վերլուծությունը, համադրված է լենինյան կուսակցության վիթխարի կոլեկտիվ փորձը, հանրագումարի են բերված իններորդ հնգամյակի արդյունքները, առաջադրված են կոմունիստական ստեղծագործության խնդիրները, սահմանված նրա հեռանկարները: Ընկեր Լ. Ի. Բրեժնևը համագումարում կարևոր դրույթներ առաջադրեց՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման ուղիների ու մեթոդների, աշխատանքի արդյունավետության ու որակի ըստ ամենայնի բարձրացման, հասարակական արտադրության ինտենսիֆիկացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, սոցիալիստական հասարակական հարաբերություններն աստիճանաբար կոմունիստականի վերաճելու, ժողովրդի բարեկեցության անշեղ աճի, բազմակողմանի զարգացած մարդու՝ կոմունիզմի ակտիվ կառուցողի դաստիարակության, ողջ սոցիալիստական հասարակական կառուցվածքի զարգացման վերաբերյալ: Այն բազմակողմանի վերլուծեց ՍՄԿԿ քաղաքական, կազմակերպական և գաղափարադաստիարակչական աշխատանքը, զարգացնելով լենինյան ուսմունքը կուսակցության՝ որպես կոմունիզմի կառուցման ընթացքում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների, ողջ ժողովրդի քաղաքական առաջնորդի, նրա դերի օրինաչափ բարձրացման մասին:

Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ բազմակողմանի վերլուծված է արդի համաշխարհային զարգացումը, ամփոփված սոցիալիստական համագործակցության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պատմական փորձը, շարադրված են ՍՄԿԿ միջազգային գործունեության արդյունքները:

XXV համագումարը հաստատեց, որ XXIV համագումարից հետո երկու տարիների տեղաշարժը պայքարում հօգուտ միջազգային լարվածության թուլացման, կապված է համաշխարհային արենայում հօգուտ սոցիալիզմի ուժերի հարաբերակցության արմատական փոփոխության, լենինյան արտաքին քաղաքական կուրսի կենսագործման, արդի պայմաններում նրա զարգացման ասպարեզում մեր կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի, անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևի տիտանական գործունեության հետ։ Հաշվետու զեկուցման մեջ առաջադրված է խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը, որը ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի օրգանական շարունակությունն ու զարգացումն է։

Այդ կուրսի հետատեսության և ներգործունության վառ և համոզիչ ապացույցն էին Բեռլինում հրավիրված Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսի բեղուն արդյունքները։ XXV համագումարի դրույթներն ու հետևությունները, Լ. Ի. Բրեժնևի ելույթը Բեռլինի կոնֆերանսում հաստատում են մարքս-լենինյան տեսությունը, կոմունիստների և անկուսակցականների քաղաքական ողջ կրթության բովանդակությունը, միաժամանակ պահանջում պրոպագանդայի միջոցներով խորապես բացահայտել մեր կուսակցության տեսական ու քաղաքական նոր գաղափարների գիտական ու գործնական նշանակությունը։ Այդ առնչությամբ մեծ նշանակություն է ստանում սոցիալիստական հասարակության զարգացմանը վերաբերող դրույթների ուսումնասիրությունը։

«Սոցիալիզմի մեծ հաղթանակների հիսուն տարին» զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հայտնեց այն հիմնավոր հետևությունը, որ մեր երկրում հաստատված է զարգացած սոցիալիստական հասարակություն, և առաջադրեց պատմական խնդիր՝ որքան կարելի է ավելի լիովին օգտագործել նրա հնարավորությունները կոմունիզմի հաջող կառուցման համար։ ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում գիտականորեն հիմնավորված է հասուն սոցիալիզմի փուլի սկզբնավորումը, ճշգրտված է դրա բնութագրումը։ Զարգացած սոցիալիստական հասարակությունը աչքի է ընկնում տնտեսական, սոցիալ-քաղաքական, գիտատեխնիկական և հոգևոր պրոցեսների հասունության բարձր աստիճանով։ Այն մի ամբողջական հասարակական սիստեմ է, որի զարգացումը, ըստ Մարքսի և Լենինի, տեղի է ունենում իր սեփական հիմքի վրա, նրան իմանենտ կերպով հատուկ այն օբյեկտիվ օրինաչափություններին համապատասխան, որոնք կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունների վկայությունն են։

Մեր երկրում ստեղծվել է մի հասարակություն, որի նմանը մարդկությունը չէր տեսել։ Ինչպես ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, դա անճգնաժամ, մշտապես աճող էկոնոմիկայի, հասուն սոցիալիստական հարաբերությունների, իսկական ազատության հասարակարգ է։ Դա մի հասարակարգ է, որտեղ տիրապետում է գիտական, դիալեկտիկական մատերիալիստական աշխարհայացքը։

Մեր հասարակության զարգացման ներկա փուլը օրինաչափ արդյունքն է կուսակցության և ժողովրդի անցած հերոսական, հեղափոխական, մարտական և աշխատանքային սխրագործություններով լեցուն ճանապարհի, նրանց, ովքեր առաջինը բացեցին կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը, կառուցեցին դրա նախնական փուլը՝ սոցիալիզմը։

Սովետական սոցիալիստական հասարակարգը ողջ մարդկության քաղաքակրթության արդյունքն է, կապիտալիզմի համեմատությամբ որակապես նոր, շատ ավելի բարձր հասարակական կազմակերպության սիստեմ։ Այն ավելի դինամիկ է ու կատարյալ, քան որևէ այլ հասարակություն, քանզի համապատասխանում է արդի արտադրաուժերի զարգացման պահանջներին և արգասիք է գիտական տեսության ու հեղափոխական գործողության օրգանական միասնության, որոնք առավել ցայտուն են մարմնավորվում կոմունիստական կուսակցության գործունեության, մասսաներին ղեկավարելու ասպարեզում։



ՍՄԿԿ քաղաքականության նպատակը ժողովրդին ծառայելն է, նրա ուշադրության կենտրոնում է գտնվում մարքսիզմ-լենինիզմի հռչակած ամենավսեմ հումանիստական սկզբունքների իրականացումը։ Սոցիալիզմի կենսական մեծ ուժը մեր օրերում հաստատված և ամրապնդված է նրանով, որ այն վերաճել է համաշխարհային սիստեմի և այդ վիթխարի ներգործություն է ունենում մարդկության պատմության ողջ ընթացքի վրա։

ՍՄԿԿ XXV համագումարը ակնհայտորեն ցույց տվեց, թե որքան մեծ ու բարեբեր են մեր երկրի հաջողությունները նյութական բարիքների արտադրության, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման և ապրելակերպի կատարելագործման ոլորտում, թե մասշտաբային ինչպիսի խնդիրներ են լուծվում ներկայումս, որքան պայծառ են ապագայի հեռանկարները։ Ամենից առաջ պրոպագանդիստներն իրենք պետք է խորապես ըմբռնեն երկրում տեղի ունեցող վերափոխումների քաղաքական և սոցիալական վիթխարի նշանակությունը և իրենց գաղափարա-քաղաքական աշխատանքում վառ ու մատչելի, համոզիչ ու բազմակողմանի բացահայտեն դրանք։

Սոցիալիստական հասարակարգը ձգողական մեծ ուժ ունի առաջադեմ ողջ մարդկության համար։ Այնքան է հզորացել մեր հասարակությունը, որ իմպերիալիզմը հետզհետե դժվարանում է արգելք դառնալ մեզ, Լենինի խոսքերով ասած, «...ակնառու կերպով, բացահայտորեն ապացուցելու յուրաքանչյուրին ու ամենքին, որ սոցիալիզմի մեջ թաքնված են հսկայական ուժեր, և որ մարդկությունն այժմ անցել է զարգացման նոր, արտասովոր փայլուն հնարավորություններ բերող ստադիայի» (Երկեր, հ. 33, էջ 594)։

Հասուն սոցիալիզմը դինամիկ, սրընթաց զարգացող հասարակարգ է։ Հասարակական առաջընթացի, մարդկանց բարեկեցության աճի, կապիտալիզմի հետ պատմական հակամարտության խնդիրների լուծման հարցերում սոցիալիզմի պատմական առավելությունների ավելի լիակատար օգտագործումը պահանջում է նրա հետագա առաջխաղացման հիմնական օրինաչափությունների, օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների խոր իմացություն։ Ընդ որում, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, անհրաժեշտ է ռեալիստորեն գնահատել հասունների մակարդակը։ «Այո՛, մենք գիտե՛նք,— ասաց համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ դեռևս ոչ բոլոր պրոբլեմներն են լուծված։ Մենք մեր բոլոր քննադատներից լավ գիտենք մեր թերությունները, տեսնում ենք դժվարությունները։ Եվ մենք հաջողությամբ հաղթահարում ենք դրանք։ Մենք տեսնում ենք և գիտենք այն ուղիները, որոնք տանում են դեպի մեր հասարակարգի հետագա զարգացում և կատարելագործում»։

XXV համագումարը ցույց տվեց, թե կուսակցությունն ինչպիսի գիտական խորությամբ է գնահատում նվաճվածը, թե որքան մեծ է նրա գիտական կանխատեսման ուժը հասունացած պրոբլեմների գնահատման և նոր առաջադրանքներ տալու խնդրում։ Այդ ամենը պետք է վառ և հմտորեն ցույց տալ մեր պրոպագանդայում։ Հարկ է, որ աշխատավորներն ստանան իրենց հուզող հարցերի որոշակի պատասխանները, լավ հասկանան և կոմունիստական շինարարության ընդհանուր գործում գիտակցաբար կատարեն իրենց պարտականությունները։

Կուսակցական ուսուցման բոլոր օղակներում մեծ տեղ է հատկացվում ՍՄԿԿ տնտեսական ստրատեգիայի հարցերի ուսումնասիրությանը։ Կուսակցության ու ժողովրդի ջանքերով երկրում ստեղծված է տնտեսական և գիտատեխնիկական հզոր պոտենցիալ, աճել է առաջավոր գիտական տեսությանը տիրապետող պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության հարուստ փորձ ունեցող որակյալ կադրերի վիթխարի բանակ։ Դրա շնորհիվ էականորեն ընդլայնվում են սոցիալիզմի օբյեկտիվ օրինաչափությունների գործունեության ոլորտը և դրանց իրականացման հնարավորությունները։ Հետզհետե ավելի տեսանելի են դառնում կոմունիստական հասարակության բարձրագույն փուլի գծերը, որոնք, Լենինի արտահայտությամբ, կոմունիզմի ծիլերն են։

Զարգացած սոցիալիզմի փուլում ՍՍՀՄ էկոնոմիկան դարձել է միասնական տնտեսական օրգանիզմ, մեր երկրի ժողովուրդների բարեկամության ու

համագործակցության նյութական ամուր հիմքը։ Այդ էկոնոմիկային բնորոշ են աճման բարձր, կայուն տեմպերը։ Մոտ կես դարում ստեղծված տնտեսական պոտենցիալը, մենք կարողացանք դրան հավասարը ավելացնել ընդամենը վերջին տասը տարում։ 1976—1990 թվականներին երկիրը կունենա երկու անգամ ավելի շատ նյութական ու ֆինանսական միջոցներ, քան անցած տասնհինգ տարիներին։

Կարևոր է, որ քաղաքական լուսավորության սիստեմի ունկնդիրները խորապես ըմբռնեն ժողովրդական տնտեսության մեջ տեղի ունեցած հսկայական որակական վերափոխությունները։ Միայն իններորդ հնգամյակի տարիներին նորացված է հիմնական արտադրաֆոնդերի մոտ 40 տոկոսը արդյունաբերության, 56 տոկոսը՝ գյուղատնտեսության մեջ, կրկնապատկվել է մեր արդյունաբերության արտադրած նոր տեսակի մեքենաների, սարքավորումների ու գործիքների թիվը։ Գիտության ու տեխնիկայի նվաճումների լայն արմատավորումն արտադրության մեջ, առաջադիմական խոր տեղաշարժերը մեր պլանային էկոնոմիկայում՝ ՍՄԿԿ քաղաքականության անշեղ կենսագործման արգասիքն են, քաղաքականություն, որի նպատակն է ապահովել սոցիալիստական հասարակարգի առավելությունների և գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը։

Հասուն սոցիալիստական հասարակության էկոնոմիկայի թելադրանքն է զուգակցել ինդուստրիայի ինտենսիվ զարգացումը գյուղատնտեսության անընդհատ վերելքի հետ։ Կուսակցության ագրարային քաղաքականության նպատակն է գյուղատնտեսական արտադրության արմատական ինդուստրիալ վերափոխումը էլեկտրիֆիկացման, մեքենայացման, քիմիացման և մելիորացման միջոցով, դրա համակողմանի ինտենսիֆիկացումը։ Գյուղատնտեսության առաջ նոր հեռանկարներ է բացում այն միջոցների կենսագործումը, որոնք բխում են XXV համագումարի որոշումներից և նախատեսված են ՍՄԿԿ Կենտկոմի «Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու մասին» որոշմամբ։ Որոշման մեջ նշվում է սոցիալիստական գյուղատնտեսության առաջընթացի գլխավոր ուղին արդի պայմաններում։

ՍՄԿԿ XXV համագումարում մշակվեց կուսակցության տնտեսական ստրատեգիան զարգացած սոցիալիզմի փուլում. Նկատի են առնված հասարակական արտադրության դինամիկ և համամասնական զարգացման պրոբլեմները, դրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավումը։ Նախատեսված միջոցները նշված ուղղություններում որոշիչ կլինեն ո՛չ միայն ներկա հնգամյակում, այլև հետագա հեռանկարում, քանզի դրանք ընտրված են սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման թելադրանքով։ Տասներորդ հնգամյակը և երկարաժամկետ հեռանկարն ընդգրկող՝ կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումն է, արտադրաֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, մեր էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն հաշվեկշռված աճի ապահովումը։ Խնդիր է դրված որակապես փոփոխել ժողովրդական տնտեսության կառուցվածքն ու տեխնիկական մակարդակը, դրա բուն պատկերը։ Այդ ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական, կազմակերպական և գաղափարա-դաստիարակչական խնդիր է։

Կուսակցական կրթության սիստեմի պրոպագանդիստները կոչված են համակողմանի օգնելու կուսակցության և սովետական պետության կադրերին, աշխատավորական մասսաներին՝ խորապես յուրացնելու և իմաստավորելու կուսակցության համագումարի ցուցումները, քանի որ արտադրության և տնտեսական ողջ մեխանիզմի կատարելագործումը պետք է խարսխվի նրանց բարձր գիտակցականության, կարգապահության և նախաձեռնության վրա։ Հաջողության գրավականը ինչպես նյութական գործոնների, նույնպես և աշխատավորների ընդունակությունների, գիտելիքների, եռանդի մոբիլիզացումն է։



Պրոպագանդայի միջոցները պետք է գործադրվեն բոլոր աշխատողներին համակելու նորի զգացումով, որպեսզի նրանք ժամանակին նկատեն ու պաշտպանեն ողջ արժեքավորը, առաջադիմականը, վճռականապես պայքարեն այն ամենի դեմ, ինչը խանգարում է մեր առաջընթացին։ Կուսակցությունը հույժ հրատապ է համարում պայքարը քարացածության ու պահպանողականության, անտնտեսվարության ու շռայլումների դեմ։

Աշխատանքի որակը պայմանավորված է յուրաքանչյուր մարդու՝ աշխատանքի նկատմամբ ունեցած գիտակցական վերաբերմունքով, պրոֆեսիոնալ վարպետությամբ, ձեռնհասությամբ, գործիմացությամբ, նրանով, թե ամեն ոք ինչպես է հասկանում իր հասարակական պարտքը։ Այստեղ ևս կարևոր է աշխատավորների տնտեսագիտական կրթության դերը, որը կուսակցությունը համարում է կառավարմանը նրանց ավելի գործուն մասնակցության նախապատրաստելու, արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի որակի բարելավման համար մղվող պայքարում նրանց ստեղծագործական ակտիվության զարգացման էական միջոց։ Ուստի, հարկավոր է աշխատավորներին օգնել ո՛չ միայն տիրապետելու տնտեսագիտությանը, այլև սովորեցնել կիրառել այն գործնականում։

Կուսակցական կազմակերպությունները տնտեսագիտության գիտական պրոպագանդայի զգալի փորձ են կուտակել։ ՍՄԿԿ XXV համագումարը բարձր գնահատեց այն միջոցառումները, որ կենսագործել են նրանք մասսայական տնտեսագիտական կրթության բարելավման նպատակով։ Պետք է ամրապնդվեն ու բազմապատկվեն այդ բնագավառում ունեցած մեր հաջողությունները — տնտեսագիտական ուսուցման մասսայական բնույթը, տնտեսական ղեկավարների, ժողովրդական տնտեսության մասնագետների լայն մասնակցությունը պրոպագանդիստական աշխատանքում, ուսուցման սերտ կապը տնտեսական պրակտիկայի հետ։

Զարգացած սոցիալիզմը ավելի ու ավելի բացահայտելով և գործադրելով իր առավելությունները, նորանոր հնարավորություններ է ընձեռում մասսաների ստեղծագործական նախաձեռնության համար։ Պրոպագանդիստները, գաղափարախոսական բոլոր կադրերը պետք է ամեն կերպ պաշտպանեն ու մասսայականացնեն այն նախաձեռնությունները, որոնք ապահովում են աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր, արտադրության ռեզերվների հայտաբերում ու առավելագույն օգտագործում, նպաստում կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացմանը, յուրաքանչյուր աշխատավորի համակում հասարակության հանդեպ պատասխանատվության զգացումով։ «Է՛լ ավելի զարգացնելով տնտեսագիտական կրթությունը,— ընդգծվում է կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— մենք պետք է հոգանք այն մասին, որ դա առավելագույն չափով նպաստի ամենուրեք աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձի տարածմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորմանը արտադրության մեջ»։

Պրոպագանդիստական գործունեության մեջ կարևոր է մեր հասարակության սոցիալական կառուցվածքում տեղի ունեցող պատմական խոր փոփոխությունների բացահայտումը։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալական առաջընթացի կենտրոնում բնականաբար և օրինաչափորեն կանգնած է բանվոր դասակարգը։ Գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությամբ տեղի են ունենում բանվոր դասակարգի քանակական ու որակական նշանակալի փոփոխություններ։ Երևան են գալիս և արագությամբ աճում են ժողովրդական տնտեսության արդիական, առաջատար ճյուղերում զբաղված բանվորների նորանոր ջոկատներ։ Բանվորի արտադրական ֆունկցիաներում մշտապես մեծանում է մտավոր աշխատանքի բաժինը, մի հանգամանք, որը կապված է մեքենայական պրոցեսների կառավարման, արդիական արտադրությանն անհրաժեշտ մեծածավալ ինֆորմացիայի ընկալման ու վերամշակման հետ. ստեղծվում է բանվոր մարդու նոր տիպ։ Առաջավոր բանվորներն այսօր աչքի են ընկնում հանրակրթական և կուլտուր-տեխնիկական խոր պատ-

իաստությամբ, քաղաքական լայն տեսադաշտով և սոցիալական ակտիվությամբ։

Բանվոր դասակարգի առաջատար դերի մեծացման հետ միասին ամրապնդվում է նրա անխախտելի դաշինքը կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի հետ, տեղի է ունենում նրանց հետագա մերձեցում։

Գիտության՝ անմիջական արտադրաուժի վերածման, արտադրության մեջ դրա նվաճումների լայն արմատավորման, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճի շնորհիվ առավել մեծաքանակ աշխատողների աշխատանքը ժողովրդական տնտեսության մեջ հետզհետե հագեցվում է ինտելեկտուալ-ստեղծագործական բովանդակությամբ։ Այդ օբյեկտիվ պրոցեսը դառնում է ՍՄԿԿ սոցիալական քաղաքականության ամուր հիմքը, քաղաքականություն, որի նպատակն է մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների հաղթահարումը։

Կյանքը լիովին հերքում է բուրժուական այն գաղափարախոսների պնդումները, որոնք փորձում են սովետական ժողովրդի ապրելակերպի ինտերնացիոնալացման օբյեկտիվորեն պայմանավորված պրոցեսը պատկերել որպես «համահարթում», որպես ազգային ինքնատիպության վերացում։ Սոցիալիստական ամեն մի ազգի կամ ազգության նվաճումները թանկ են սովետական բոլոր մարդկանց։ Ինտերնացիոնալացումը նշանակում է նյութական և հոգևոր կուլտուրայի նվաճումների փոխանակում և ժողովուրդների փոխհարստացում, առաջավոր ավանդույթների զարգացում և ներազգայնական նախապաշարումների ու սահմանափակվածության հաղթահարում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի տեսադաշտում է մշտապես գտնվում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործումը։ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին նպատակամղում է վճռականապես վերացնելու թերությունները գաղափարական աշխատանքի այդ կարևոր տեղամասում։ Ինչպես նշվեց XXV համագումարում, սովետական ժողովուրդների եղբայրության առավել ամրապնդման գործում դրական ազդեցություն ունեցան այն ճիշտ հետևությունները, որ արվեցին Կենտկոմի ցուցումներից՝ հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման անհրաժեշտության մասին։

Վերջերս Կենտրոնական կոմիտեն քննության առավ «Կուսակցության Թբիլիսիի քաղկոմի կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման ընթացքը Վրաստանի կուսակցական կազմակերպության կողմից»։ Համակուսակցական նշանակություն ունեցող այդ փաստաթղթում արծարծված են XXV համագումարի ցուցումները կոնկրետացնող մի շարք սկզբունքային դրույթներ, որոնց նպատակն է բարձրացնել դաստիարակչական ողջ աշխատանքի մակարդակը, սովետական հասարակության մեջ զարգացնել բարոյա-քաղաքական առողջ մթնոլորտ։

Մեր տնտեսական ու սոցիալական առաջընթացի յուրաքանչյուր աստիճան անխզելիորեն կապված է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու խորացման հետ։ ՍՄԿԿ XXV համագումարը կրկին հաստատեց լենինյան այն միտքը, որ դեմոկրատիան մեզ համար սոսկ ցանկություն չէ, այլ օբյեկտիվ անհրաժեշտություն։ Ինչպես իսկական դեմոկրատիան է անհնար առանց սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիզմն անհնար է առանց դեմոկրատիայի մշտական զարգացման։ Կուսակցական կրթության սիստեմը, պրոպագանդիստական բոլոր կադրերը կոչված են խորապես և համոզիչ պարզաբանելու այդ հիմնարար հետևության էությունը, կյանքից առնված կոնկրետ փաստերով ցույց տալու սոցիալիստական դեմոկրատիզմը. կառավարման ողջ սիստեմը գործում է հօգուտ ժողովրդի, միլիոնավոր աշխատավորներ անմիջաբար մասնակցում են պետական և հասարակական գործերի կառավարմանը. այս է սոցիալիստական դեմոկրատիզմի բուն իմաստը։

Հարձակվելով սովետական սոցիալիստական դեմոկրատիզմի արժույթների վրա, մեր գաղափարական հակառակորդներն ի տես են դնում բուրժուական դեմոկրատիայի արտաքին երևացումները, օրինակ, քաղաքական կյանքի «պլյուրալիզմը», օպոզիցիոն կուսակցությունների առկայությունը և այլն,



այսինքն՝ այն պրակտիկան, որն իրականում ծնունդ է առել բուրժուական հասարակության դասակարգային-հակամարտ սոցիալական կառուցվածքից։ Իմպերիալիզմի գաղափարախոսներն ու քաղաքագետները, մեղադրելով սոցիալիզմին դեմոկրատիայի և ազատությունների պակաս լինելու համար, իրենց ներքին պրոպագանդայում և քաղաքականության մեջ հիմնականը համարում են աշխատավորների՝ տիրապետող դասակարգին անվերապահորեն ենթարկվելու պահանջը։

Սոցիալիստական դեմոկրատիայի հաջող զարգացումը հնարավոր է միայն կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։ Այդ պատճառով իսկ սոցիալիզմի թշնամիներն իրենց գլխավոր հարվածը մշտապես ուղղել և ուղղում են նրա դեմ, փորձելով հասնել նրա ղեկավար դերի վերացմանը նոր հասարակության կառուցման գործում։ Սոցիալիստական քաղաքական սիստեմի վերաբերյալ ինչպիսի հնարամիտ զրպարտանքի էլ դիմեն կապիտալիզմի ջատագովները, աշխարհի ժողովուրդների համար հետզհետե ավելի պարզ է դառնում, որ մեր կուսակցությունը, հետևողականորեն վարելով սովետական պետության ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման կուրս, արդյունավետ գործում է հանուն ողջ ժողովրդի շահերի, անհատի բազմակողմանի ծաղկման, հանուն կոմունիստական շինարարության։

ՍՄԿԿ XXV համագումարը մշակեց ծավալուն ծրագիր սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, աշխատավորների դեպուտատների սովետների և հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման, մեր ժողովրդական իշխանության իրավական բազայի ամրապնդման, կառավարման մարմինների հրապարակայնության, դրանց գործունեության մասին հաշվետվության, դրանք մասսաների վերահսկողությանը ենթարկելու սկզբունքի ընդլայնման վերաբերյալ։ Ձեռնարկված միջոցները զարգացնում և խորացնում են մեր ողջ քաղաքական սիստեմի համաժողովրդական կողմերը։ Պարզաբանելով կուսակցության և սովետական պետության այդ միջոցառումների նշանակությունը՝ պրոպագանդիստները կոչված են համոզիչ կերպով մերկացնելու բուրժուական պրոպագանդայի հարձակումները ընդդեմ սոցիալիստական դեմոկրատիայի, մեր ապրելակերպի։

Հակակոմունիզմի և հակասովետիզմի գաղափարախոսները ձգտում են նվաղեցնել և նսեմացնել մեր երկրում նոր հասարակության կառուցման փորձի միջազգային նշանակությունը։ Գործադրելով իրենց ողջ հնարամտությունը՝ նրանք ճգնում են ստեղծել, այսպես կոչված՝ «սոցիալիզմի մոդելներ», հօժարակամ ընդունում սոցիալ-դեմոկրատական, բուրժուազիային ոչնչով չսպառնացող տարբերակներ, փորձում աղճատել մարքսիզմ-լենինիզմի տեսությունը, սոցիալիստական շինարարության պրակտիկան, դրանով իսկ բանվորական շարժումը հեղափոխական ճանապարհից հրել դեպի ռեֆորմիզմի և նացիոնալիզմի «բարեբաստիկ» ուղին։

Այդ ամենը ցույց է տալիս, թե մեր գաղափարական հակառակորդները որքան են սարսափում Սովետական Միության և մյուս եղբայրական երկրների սոցիալիստական իրականությունից։ Գաղափարական աղքատությունը իմպերիալիստական քաղաքագետներին ու գաղափարախոսներին հարկադրում է ավելի հաճախ դիմելու սոցիալիզմի լոզունգները փոխառնելու և դրանք աղճատված ձևով յուրացնելու խաբեբայական տակտիկային։ Այդ առնչությամբ պրոպագանդիստական գործունեության ընթացքում զարգացած սոցիալիստական հասարակության հիմնական հատկանիշների և օրինաչափությունների բացահայտման հետ մեկտեղ անհրաժեշտ է հիմնավոր փաստարկմամբ մերկացնել գաղափարական հակառակորդների նմանօրինակ տակտիկայի դասակարգային էությունն ու նպատակը, նրանց պրոպագանդած կեղծ սոցիալիստական հայացքները։

Համադրելով կապիտալիստական երկրներում զանազան մտահնար «սոցիալիզմի մոդելները», դժվար չէ ի հայտ բերել բուրժուական, սոցիալ-դեմոկրատական և ռևիզիոնիստական կոնցեպցիաների փոխադարձ կապը։ Իրականում դրանց էությունը սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կա-

ռուցման միասնական սկզբունքների ու հատկանիշների ժխտումն է, բանվոր դասակարգի գաղափարական զինաթափումը բուրժուազիայի առջև:

Մինչդեռ գիտական սոցիալիզմի և կոմունիզմի տեսությունն աչքի է ընկնում բացառիկ ինքնատիպությամբ ու ամբողջականությամբ, այն հաստատում է հասարակական զարգացման ընդհանուր օրինաչափությունների հիմնարար նշանակությունը, որոնց ներգործությունը համակողմանի հաստատված է ՍՄԿԿ և սոցիալիստական մյուս երկրների եղբայրական կուսակցությունների պրակտիկայով: Հենվելով համաշխարհային սոցիալիստական համագործակցության երկրներում նոր հասարակության կառուցման պատմական փորձի վրա, գաղափարա-տեսական աշխատանքում և պրոպագանդայում այսուհետ ևս անհրաժեշտ է պաշտպանել մարքսիզմ-լենինիզմի անաղարտությունը, խորապես և բազմակողմանիորեն պրոպագանդել սոցիալիզմի, սոցիալիստական ապրելակերպի նվաճումներն ու առավելությունները:

**Կուսակցական** պրոպագանդայի, դրա բովանդակության հարստացման համար կարևորագույն նշանակություն ունեն ՍՄԿԿ XXV համագումարի սկզբունքային, տեսական ու քաղաքական հետևությունները, որոնք բխում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի վերլուծությունից: Համագումարը բնութագրեց մեր դարաշրջանին բնորոշ արմատական սոցիալական փոփոխությունները, ստեղծագործաբար զարգացրեց սոցիալիստական հեղափոխության, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման, դասակարգային պայքարի և խաղաղ գոյակցության հարաբերակցության մարքս-լենինյան տեսությունը: Համագումարն ընդգծեց համաշխարհային սոցիալիզմի ուժերի և ազդեցության աճման համաշխարհային-պատմական նշանակությունը:

Ինչպես նշեց Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այսօր բոլոր հիմքերը կան խոսելու սոցիալիստական համագործակցության մասին՝ որպես «սկզբունքորեն նոր երևույթի՝ համոզմունքների միասնությամբ և նպատակների ընդհանրությամբ միաձուլված ժողովուրդների իսկական եղբայրության»: Մեր պրոպագանդայի խնդիրն է՝ համակողմանի պարզաբանել այդ դաշինքի առանձնահատկություններն ու նշանակությունը, վառ ու համոզիչ ներկայացնել դրանում ընդգրկված ժողովուրդների հաջողությունները, որոնք նվաճվել են բանվոր դասակարգի մարքս-լենինյան կուսակցությունների ղեկավարությամբ՝ գիտական կոմունիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա, իրավահավասարության, ընկերական օգնության ու համագործակցության պայմաններում, ջանքերի միավորման շնորհիվ:

Կապիտալիզմի շղթաներից ազատագրված, անկախություն նվաճած պետությունների ու ժողովուրդների զարգացման պրոցեսում գոյություն ունեցող բարդ ու հակասական տենդենցների գնահատման հարցում ունկնդիրներին դաստիարակել ակտիվ դասակարգային մոտեցման ոգով. այս է քաղաքական լուսավորության սիստեմի խնդիրներից մեկը: XXV համագումարը հանգամանորեն բնութագրեց այդ երկրներում տեղի ունեցող պրոցեսները և հայտարարեց, որ այսուհետ ևս պաշտպանելու է իրենց ազատության համար պայքարող ժողովուրդներին:

Կոմունիստներին, բոլոր աշխատավորներին պետք է պարզաբանել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի արդի փուլի յուրահատկության համագումարյան բնութագրումը, որը տեսական կարևորագույն եզրահանգումներից է: Այդ ճգնաժամն իր սրությամբ ու խորությամբ հավասարը չուներ 30-ական թվականների սկզբի «մեծ դեպրեսիայից» հետո: Այն միաժամանակ ընդգրկեց համաշխարհային կապիտալիստական տնտեսության բոլոր հիմնական կենտրոններն ու ոլորտները: Ճգնաժամը զուգորդվում էր դասակարգային պայքարի ուժեղացմամբ, միջիմպերիալիստական մրցակցությամբ, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմին հատուկ բոլոր հակասությունների սրմամբ:

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի համակողմանի խորացման փաստը լիովին հաստատում է մարքս-լենինյան հետևությունը կապիտալիզմի՝ որպես ապագա չունեցող հասարակարգի մասին: Այստեղից և մեր պրոպագանդայի



նոր հնարավորությունները՝ մերկացնելու մասնավոր սեփականատիրական հասարակարգի շահագործողական էությունը, նրա հակաժողովրդական գաղափարախոսությունն ու քաղաքականությունը, լուսաբանելու աշխատավորների հարաճուն դասակարգային պայքարը մոնոպոլիաների ճնշման դեմ, ավելի ու ավելի լայն մասշտաբներով ու ակտիվությամբ ծավալվող հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժումները, որոնց ավանգարդն է բանվոր դասակարգը՝ կոմունիստական կուսակցությունների գլխավորությամբ:

Այժմ մի շարք կապիտալիստական երկրների քաղաքական ուժերի դասավորության մեջ շրջադարձ է կատարվում դեպի ձախ: Այդ առավել ցայտուն արտահայտվեց Եվրոպայում: Պորտուգալիայում հաղթանակեց հակաֆաշիստական դեմոկրատական հեղափոխությունը: Տապալվեց ռազմա-ֆաշիստական ռեժիմը Հունաստանում: Նշանակալիորեն ամրապնդվեցին կոմունիստների և նրանց քաղաքական դաշնակիցների դիրքերը Իտալիայում և Ֆրանսիայում: Լուրջ քաղաքական փոփոխություններ են սպասվում Իսպանիայում:

Հեղափոխական-դեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժման ընդլայնման առնչությամբ աճում է սոցիալական կոալիցիաների և դաշինքների, առաջին հերթին՝ բանվոր դասակարգի տարբեր ջոկատների միասնական գործողությունների դերը: Այդ պայմաններում հատուկ նշանակություն են ստանում կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման դրույթները կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների միջև համագործակցության բնույթի ու պայմանների մասին:

Համագումարն ընդգծեց, որ անթույլատրելի է գիտական կոմունիզմի գաղափարական մերձեցումը սոցիալ-դեմոկրատների ռեֆորմիզմի հետ, անհրաժեշտ է պայքարել այն սոցիալ-դեմոկրատների դեմ, որոնց գործունեությունը հիմնվում է հակակոմունիզմի և հակասովետիզմի վրա: «Սակայն,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— խաղաղության գործի համար իրենց պատասխանատվությունը գիտակցող սոցիալ-դեմոկրատների և առավել ևս սոցիալ-դեմոկրատ բանվորների հետ մեզ կարող են միավորել և միավորում են ժողովուրդների անվտանգության նկատմամբ հոգատարությունը, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու, ֆաշիզմին, ռասիզմին ու գաղութատիրությանը հակահարված տալու ձգտումը: Հենց այս առումով մենք հանդես ենք բերել և հանդես կբերենք նախաձեռնություն և բարի կամք»:

Այս բոլոր խնդիրները լուսաբանելիս անհրաժեշտ է մշտապես նկատի ունենալ կուսակցության XXV համագումարի սկզբունքային դրույթը ներկա պայմաններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի բացառիկ դերի մասին: Հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքին այժմ առանձնահատուկ իմաստ է ստանում այն առնչությամբ, որ մի քանի կեղծ նորարարներ փորձում են ապացուցել, թե իբր հնացել է գիտական կոմունիզմի հիմնադիրների սահմանած պրոլետարական ինտերնացիոնալիզմը: «Իսկ մեր տեսակետից,— արտահայտելով սովետական կոմունիստների կարծիքը, ՍՄԿԿ XXV համագումարում հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— պրոլետարական ինտերնացիոնալիզմից հրաժարվելը կնշանակեր կոմկուսներին և առհասարակ բանվորական շարժումը զրկել հզոր և փորձված զենքից... Մենք՝ սովետական կոմունիստներս, պրոլետարական ինտերնացիոնալիզմի պաշտպանությունը համարում ենք յուրաքանչյուր մարքսիստ-լենինյանի սրբազան պարտականությունը»:

Կուսակցության գաղափարախոսական աշխատողների ջանքերը պետք է գործադրվեն սովետական բոլոր մարդկանց գիտակցության մեջ արմատավորելու լենինյան ըմբռնումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին. այն բոլոր երկրների բանվոր դասակարգի, կոմունիստների համերաշխությունն է ընդհանուր նպատակների համար մղված պայքարին, համերաշխությունը ժողովուրդների՝ հանուն ազգային-ազատագրության ու սոցիալական առաջընթացի ծավալած պայքարին, եղբայրական կուսակցությունների կամավոր համագործակցությունը՝ նրանցից յուրաքանչյուրի իրավահավասարության ու անկախության պահպանման պայմաններում:

Ինչպես նշվեց XXV համագումարում, նոր պայմաններում առանձնապես հրատապ է միջազգային լարվածության թուլացման, խաղաղ գոյակցության և դասակարգային պայքարի հարցը։ Այդ հարցին մեծ ուշադրություն նվիրվեց Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսում։

Լարվածության թուլացումը խոր ներգործություն է ունենում հասարակական ողջ զարգացման վրա, ուստի միջազգային կյանքում վերջին տարիներին կատարվող տեղաշարժերի, դրանց բնույթի ու հետևանքների գնահատումը դարձել է քաղաքական և գաղափարական լարված պայքարի օբյեկտ։ Բանվորական շարժման բուրժուական հակառակորդները և նրանց հարող սոցիալ-ռեֆորմիստները կկամենային լարվածության թուլացումն օգտագործել պահպանելու համար սոցիալական ներկա իրավիճակը։ Իսկ «ձախերը», ընկնելով մյուս ծայրահեղության մեջ, լարվածության թուլացումը համարում են «հրաժարումն» իմպերիալիզմի դեմ պայքարելուց։

Հարկ է մշտապես ընդգծել, որ ակտիվորեն հանդես գալով հանուն լարվածության թուլացման, խաղաղ գոյակցության, մեր կուսակցությունը գտնում է, որ դրանք տարածվում են սոսկ միջպետական հարաբերությունների բնագավառում, բայց ամենևին չեն վերացնում և չեն կարող վերացնել կամ փոխել դասակարգային պայքարի օրենքները։ Լարվածության թուլացումը կուսակցությունը համարում է ՍՍՀՄ-ում և եղբայրական մյուս երկրներում սոցիալիստական ու կոմունիստական շինարարության, ինչպես և բանվորական ու ազգային-ազատագրական շարժման ծավալման, իմպերիալիզմի դեմ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մղված պայքարի համար բարենպաստ պայմանների ստեղծման միջոց։

«Համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություն են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար,— XXV համագումարում նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։— Բայց, մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ»։ Այդ ցուցումը սկզբունքային նշանակություն ունի գաղափարախոսական ճակատի աշխատողների համար։ Պրոպագանդիստներից այն պահանջում է անզիջում գաղափարական պայքար, քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և արդյունավետ գաղափարա-քաղաքական աշխատանք, վճռական հակահարված թշնամական գաղափարական դիվերսիաներին, հարձակողականություն կոմունիստական գաղափարների և սոցիալիստական երկրների հաջողությունների պրոպագանդման գործում։

Մեր գաղափարա-քաղաքական աշխատանքի բարձրագույն նպատակը յուրաքանչյուր սովետական մարդու կոմունիստական խոր գաղափարայնությամբ համակելն է, ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը համագումարում, այդ գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործունեության համաձուլվածքն է։ Լենինը սովորեցրել է աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակության արդյունքները գնահատել նրանով, թե ինչպես է գաղափարախոսությունը տիրապետում մասսաներին, ինչպես է բարձրացնում նրանց ակտիվ գործունեությունը հանուն նոր կյանքի կառուցման։ Գաղափարա-դաստիարակչական գործի խնդիրներից մեկը մասսաների աշխատանքային ակտիվության համակողմանի զարգացումն է, իրենց աշխատանքի հասարակական նշանակության խոր ըմբռնումը սովետական մարդկանց կողմից, ողջ ժողովրդի ամենօրյա ջանքերի և հասարակական-քաղաքական նպատակների կապը։ Կոմպլեքսային մոտեցում կոմունիստական դաստիարակության ողջ գործին. արդի պայմաններում այս է գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման ուղին, նշեց XXV համագումարը։ Իսկ այդ նշանակում է մեր աշխատանքի բոլոր բնագավառներում, բոլոր աստիճաններում ամենասերտ կերպով միացնել գաղափարա-դաստիարակչական, աշխատանքային և բարոյական դաստիարակությունը։



Կուսակցության XXV համագումարի որոշումներն ու նյութերը խորապես, աշխատավորական կոլեկտիվների, ողջ հասարակության սոցիալ-քաղաքական և արտադրական գործունեության հետ սերտորեն կապված ուսումնասիրելու նպատակով կուսակցական կրթության սկզբնական օղակում այս տարվանից նախատեսվում է «ՍՄԿԿ քաղաքականության արդիական հարցերը», միջին օղակում՝ «ՍՄԿԿ քաղաքականությունը մարքսիզմ-լենինիզմն է՝ գործողության մեջ» կուրսերը։ Այդ կուրսերում կպարզաբանվեն կուսակցական պատմական փաստաթղթերում առաջադրված տեսական ու քաղաքական դրույթները, գործնական խնդիրները։

Առաջիկա ուսումնական տարում բարձրագույն օղակում ևս կուսումնասիրվեն կուսակցության տեսության ու քաղաքականության արդիական պրոբլեմները՝ ՍՄԿԿ XXV համագումարի լույսի ներքո։ Ղեկավար կադրերի, մտավորականության ուսուցումը պետք է կազմակերպվի այնպես, որ սիստեմատիկ կուրսի հետ մեկտեղ նրանք ուսումնասիրեն իրենց պրակտիկ գործունեության անմիջապես առնչվող տեսության ու քաղաքականության պրոբլեմները։ Ուստի, նպատակահարմար է ուսուցումը կազմակերպել հետևյալ կերպ.

— կուսակցական և սովետական կադրերը կուսումնասիրեն կուսակցական և պետական շինարարության, տնտեսական, սոցիալական և գաղափարախոսական պրոցեսների ղեկավարման տեսության ու մեթոդների այժմեական հարցերը.

— մինիստրությունների և գերատեսչությունների աշխատողները, տնտեսական ղեկավարները, ժողովրդական տնտեսության մասնագետները՝ էկոնոմիկայի և կառավարման կարևոր հարցերը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման մեթոդները.

— գիտական աշխատողները՝ հասարակական և բնական գիտությունների մեթոդոլոգիական պրոբլեմները, գիտատեխնիկական հեղափոխության սոցիալ-տնտեսական ասպեկտները.

— բարձրագույն և միջնակարգ դպրոցների աշխատողները՝ կոմունիստական դաստիարակության, բազմակողմանի զարգացած անհատի ձևավորման տեսության ու պրակտիկայի պրոբլեմները.

— գեղարվեստի բնագավառի մտավորականությունը՝ կուլտուրական շինարարության, էսթետիկայի հարցերը, միջազգային գաղափարախոսական արդի պայքարը գրականության և արվեստի հարցերի շուրջ։

ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է ինչպես հարկն է վերահսկեն կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման կազմակերպմանը։

Որոշման մեջ կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների ուշադրությունն է հրավիրվում այն բանի վրա, որ մարքս-լենինյան կրթության մարզում ցուցաբերվի դիֆերենցված մոտեցում, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ կամովին ընտրի ուսուցման առարկան ու ձևը։

Գաղափարա-քաղաքական կրթության մակարդակն ու բովանդակությունը, աշխատանքային ու բարոյական դաստիարակության օրգանական միասնությունը մեծապես պայմանավորված են գաղափարախոսական աշխատողների տեսական պատրաստականությամբ, կուսակցական կոփվածությամբ ու նվիրվածությամբ։ Մեր կուսակցությունը իրավամբ հպարտանում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդիստների իր դաստիարակած հիանալի ջոկատով։ Մասսաների քաղաքական լուսավորության շնորհակալ գործով զբաղվում են հարյուր հազարավոր կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ։

Պրոպագանդիստական կադրերի, գաղափարախոսական ճակատի ողջ ակտիվի հետ տարվող աշխատանքը այսուհետ ևս կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների գործունեության հիմնական պրոբլեմներից է։ Այսօր ևս այժմեական են լենինյան այն ցուցումները, որ պրոպագանդիստական կադրեր պետք է հատկապես ընտրել, երկար ժամանակում պատրաստել և հոգածությամբ պահպանել, քանզի մեծ չափով նրանք են պայմանավորում

հաջողությունը կուսակցության գործունեության այնպիսի կարևոր ոլորտում, ինչպիսին աշխատավորների գաղափարա-քաղաքական դաստիարակությունն է։

Կուսակցական պրոպագանդիստից այսօր պահանջվում են՝ գիտելիքների բարձր մակարդակ մարքս-լենինյան տեսության, կուսակցության ներքին ու միջազգային քաղաքականության հարցերում, գաղափարական խոր համոզվածություն, իրազեկություն, վարպետություն և մանկավարժական հմտություն, բանիմացություն կյանքի առաջադրած հարցերում։ Պրոպագանդիստները պետք է կուսակցական դիրքերից գնահատեն հասարակական երևույթները և համոզիչ կերպով փաստարկեն այդ գնահատումները, ստեղծագործաբար մոտենան իրենց աշխատանքին, կարողանան կոմունիստական իդեալների պրոպագանդումը միացնել կուսակցության քաղաքականության, նրա կանխագծումների կատարման համար ծավալված գործնական պայքարին, վճռական հակահարված տան բուրժուական գաղափարախոսության ամեն մի դրսևորման, մեր հասարակության բարոյական նորմերից կատարվող բոլոր շեղումներին։

Պրոպագանդիստների հետ տարվող կուսակցական կոմիտեների աշխատանքում հույժ կարևոր է օգնել նրանց, որպեսզի առաջին հերթին իրենք խորապես յուրացնեն ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների ու նյութերի գաղափարներն ու հետևությունները։ Այդ կբարձրացնի նրանց գաղափարա-տեսական զինվածությունը։ Մեր պրոպագանդիստների մեծ մասը մասնագետ-մանկավարժներ չեն, այլ ժողովրդական տնտեսության մասնագետներ՝ ինժեներներ, ագրոնոմներ, բժիշկներ, առաջավոր բանվորներ, գյուղացիներ։ Ուստի, հարկավոր է օգնել նրանց՝ մշտապես կատարելագործելու մեթոդական վարպետությունը, սովորեցնել ստեղծագործաբար վարել գաղափարա-դաստիարակչական աշխատանքը։

Կուսակցական կոմիտեները կոչված են բարելավելու կուսակցական կազմակերպությունների և աշխատանքային կոլեկտիվների ամենօրյա խնդիրների ու գործերի մասին հաղորդվող ինֆորմացիան։ Այդ նպաստում է ուսուցման արդիականացմանը, կուսակցության քաղաքականության, մասսաների ամենօրյա գործունեության հետ պրոպագանդայի կապի ամրապնդմանը։

Կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքս-լենինյան կրթությունը մեծ գործ է ո՛չ միայն իր ընդգրկումով, այլև գաղափարա-քաղաքական նշանակությամբ։ Քաղաքական լուսավորության սիստեմի գործունեությունն այսօր առավել կարևոր և պատասխանատու է։ Դրա խնդիրն է յուրաքանչյուր կոմունիստի, աշխատավորների լայն մասսաներին օգնել տիրապետելու ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերի գաղափարա-տեսական հարստությանը, իրենց աշխատանքում այդ գիտելիքներն ընդունել ի ղեկավարություն, որոնք կմղեն ակտիվորեն պայքարելու կուսակցության մեծ կանխագծումների կենսագործման համար։ Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների պատվի գործն է, պրոպագանդիստների, դասախոսների, զեկուցողների, քաղինֆորմատորների, լրագրողների, գաղափարախոսական բոլոր աշխատողների պարտքն է հաջողությամբ լուծել այդ խնդիրը։

«Коммунист», № 12, 1976.



ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ
ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ՍՄԿԿ-Ի ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՏԵՍԱԿԱՆ ՀԻՄՔՆ Է

Ն. ՆԻԿՈԼԱԵՎ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ խոր ուսումնասիրությունը կուսակցական կրթության ողջ սիստեմի գլխավոր խնդիրն է, կոմունիստների և անկուսակցականների հոգևոր կենսական պահանջը։ Համագումարը նշեց, որ, չթուլացնելով ուշադրությունը աշխատավորների ավելի ու ավելի լայն զանգվածներին կուսակցական ուսուցման մեջ ներգրավելու նկատմամբ, հարկավոր է հատուկ հոգատարություն ցուցաբերել դրա բովանդակության բարելավման համար։

Խոսքն այն մասին է, որ համագումարի նյութերն ինքնուրույն ուսումնասիրող ընկերները ոչ թե պարզապես հիշեն դրանցից բխող հետևությունները ու դրույթները, այլ կարողանան ըմբռնել մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներն ու մեթոդոլոգիական դրույթները, որոնք ընկած են կուսակցության գործունեության հիմքում և իրենց կոնկրետ մարմնավորումն են գտել ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցման մեջ և համագումարի մյուս փաստաթղթերում։ Առանց գործի նկատմամբ այդպիսի մոտեցման չի կարելի հասնել այն բանին, որ համագումարի առաջադրած յուրաքանչյուր առանձին հարց ըմբռնվի ու իմաստավորվի կուսակցության ամբողջ քաղաքականության, կոմունիստական շինարարության քաղաքականության սկզբունքային ուղղությունների հետ անմիջական կապի մեջ։

## ՀԱՎԱՏԱՐՄՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻՆ, ՆՐԱ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆ ԵՆ

Հեղափոխական տեսության ճշմարտությունը բանվոր դասակարգի, նրա կուսակցության վերափոխիչ գործունեության համար հիմնավորել են գիտական կոմունիզմի հիմնադիրները։ Ստեղծելով իրենց ուսմունքը, ի հակակշիռ ուտոպիական կոնցեպցիաների, Մարքսը և Էնգելսը ելնում էին այն բանից, որ պրոլետարիատի ավանգարդի՝ կոմունիստների խնդիրը ոչ թե պարզապես այն է, որ բացատրի աշխարհը, ցույց տա կապիտալիստական հասարակության մեջ գոյություն ունեցող սոցիալական անարդարությունը, այլ բացահայտի այդ անարդարության ակունքները, արմատները, հասարակական զարգացման

օբյեկտիվ օրինաչափությունները և ցույց տա կապիտալի դեմ, մարդու կողմից մարդու ճնշման ողջ սիստեմի դեմ բանվոր դասակարգի պայքարի իրական ուղիները։ Այդ նպատակին կարելի է հասնել միայն իրականության գիտական վերլուծության, հասարակական զարգացման տեսության հիման վրա, որն ունակ է ուղենիշ լինելու պրոլետարիատի ու նրա կուսակցության համար՝ հանուն նոր հասարակարգի կառուցման նրա մղած պայքարում։ Հենց այդպիսին է գիտական կոմունիզմի տեսությունը։ Առանց հեղափոխական տեսության չի կարող լինել նաև հեղափոխական շարժում։

Զարգացնելով Մարքսի և Էնգելսի ուսմունքը, հիմնավորելով բանվոր դասակարգի մարքսիստական կուսակցության, նոր տիպի կուսակցության կազմավորման ու գործունեության սկզբունքները, Լենինն այդպիսի կուսակցությունը դիտում էր որպես հեղափոխական տեսության և հեղափոխական պրակտիկայի բարձրագույն մարմնավորում։ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունն իր ողջ գործունեությամբ ցույց տվեց, որ ինքը հավատարիմ է մարքսիզմի սկզբունքներին, որ իր քաղաքականությունը հիմնվում է իրականության գիտական խոր վերլուծության վրա, արտահայտում է ժողովրդի արմատական, կենսական շահերը։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հասուն սոցիալիստական հասարակարգ կառուցած մեր երկրի աշխատավորների անցած հերոսական ուղին, համաշխարհային սոցիալիզմի և հեղափոխական պայքարի ամբողջ փորձը հաստատում են, որ կյանքի, հասարակական պրակտիկայի տեսական խոր իմաստավորումը հեղափոխական պայքարի և կոմունիստական շինարարության հաջողության անհրաժեշտ պայմաններից է։ «Մարքսիզմ-լենինիզմը միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում։— Նա մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղությունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում։ Մարքսիզմ-լենինիզմի ուժը մշտական ստեղծագործական զարգացումն է։ Այդ է սովորեցրել Մարքսը։ Այդ է սովորեցրել Լենինը։ Նրանց պատգամներին մեր կուսակցությունը միշտ հավատարիմ կլինի» (էջ 118)[1]։

Ուրեմն որո՞նք են մարքսիզմ-լենինիզմի՝ որպես տեսության, որպես կոմունիստական կուսակցության քաղաքականության գիտական հիմքի առանձնահատկությունները։

Մարքսիզմ-լենինիզմի առաջնային յուրահատկությունը, բնորոշ գիծն այն է, որ ինչպես արդեն նշեցինք, այն բացահայտում է հասարակական զարգացման օրինաչափությունները, հասարակության պատմության գիտական կոնցեպցիա է՝ հիմնված նրա մատերիալիստական ըմբռնման վրա։ Հասարակության զարգացման ընդհանուր օրինաչափությունները, սակայն, միշտ հանդես են գալիս կոնկրետ, դրսևորվում առանձնահատուկ ձևով։ Ուստի, ինչպես ընդգծում էին մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները, այդ օրինաչափությունների իմացությունը ընդհանուր ձևով չի կարող բավարար լինել յուրաքանչյուր տվյալ ժամանակաշրջանում՝ հեղափոխական պայքարի ու կոմունիստական շինարարության նպատակասլաց քաղաքականություն մշակելու համար։

Այստեղից էլ բխում է մեր տեսության երկրորդ բնորոշ հատկանիշը՝ նրա ստեղծագործական, հակադոգմատիկ բնույթը։ Մարքսիզմ-լենինիզմը ելնում է այն բանից, որ գիտության դրույթները չի կարելի շաբլոնացնել, տեսությունը պետք է մշտապես զարգանա իրականության համակողմանի վերլուծությամբ, որն ի հայտ է բերում տվյալ ժամանակաշրջանի համար բնորոշ հասարակական-պատմական զարգացման նոր օրինաչափություններ և տենդենցներ։ «Մարքսիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— կանգնած է փաստերի և ոչ թե հնարավորությունների հողի վրա։ Մարքսիստն իր քաղաքականության հիմքում պետք

[1] Այստեղ և հետագա վկայակոչումները տրվում են ըստ Լ. Ի. Բրեժնևի ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում գրքի։ «Հայաստան» հրատ., 1976։



է դնի միայն ստույգ և անվիճելիորեն ապացուցված փաստեր» (հ. 35, էջ 257)։ Երևույթների, պրոցեսների նկատմամբ կոնկրետ պատմական մոտեցումը, որը տեսության զարգացման ներքին զսպանակն է, տեսությանը հնարավորություն է տալիս՝ շարունակ գտնվելու հասարակական պրակտիկայի պահանջների մակարդակին, լուսավորելու նրա ուղին, կոմունիստներին, աշխատավորներին կողմնորոշելու նրանց պրակտիկ գործունեության մեջ։

Իրականության կոնկրետ պատմական մարքս-լենինյան վերլուծությունը բնականաբար հանգեցնում է արդի ողջ գիտության տվյալները հաշվի առնելու անհրաժեշտության։ Մարքսիզմը, շեշտում է Լենինը, չի ծագել գիտության մայրուղուց դուրս. աշխարհի վերաբերյալ մարդկության կուտակած ողջ գիտելիքների օրինաչափ ժառանգորդն է այն։ Մարքսը «պատասխան տվեց այն հարցերին, որ մարդկության առաջավոր միտքն արդեն առաջադրել էր» (հ. 19, էջ 3—4)։ Մարքսիզմի հետագա ողջ զարգացումը օրգանապես կապված է բնական և հասարակական գիտությունների նվաճումների, դրանց արդյունքների ընդհանրացման, կոմունիզմի պրոբլեմների լուծման համար վերջիններիս օգտագործման հետ։

Մարքսիզմ-լենինիզմի հայտնագործած պատմական պրոցեսների ընդհանուր օրինաչափությունների անվերապահ ընդունումը և իրականության վերլուծության նրա մեթոդոլոգիական սկզբունքների նպատակային կիրառումը (կոնկրետ պատմական մոտեցումը, երևույթների օբյեկտիվ-գիտական ուսումնասիրությունը, դրանց քննադատական վերլուծությունը և այլն) այդ ուսմունքին հավատարիմ լինելու պարտադիր պայմանն են։ Երևույթների գիտական խոր ուսումնասիրությունը, մասսաների հեղափոխական պայքարի համակողմանի փորձի, սոցիալիստական, կոմունիստական շինարարության փորձի ընդհանրացումը և այդ հիմքի վրա նոր հետևություններով ու դրույթներով մարքս-լենինյան տեսության հարստացումը այդ տեսությանը կոմունիստական կուսակցության հավատարմության որոշիչ հատկանիշներից են։

Իրենց միասնության մեջ վերցրած՝ մարքսիզմի վերոհիշյալ բնորոշ հատկանիշներից էլ բխում է նրա երրորդ առանձնահատկությունը՝ օրգանական կապը հասարակական զարգացման պրակտիկայի հետ։ Իրականության նկատմամբ հենց այդ ստեղծագործական մոտեցումն է, որ կուսակցությանը հնարավորություն է ընձեռում՝ ընդհանրացնելու մասսաների փորձը, գտնելու կենսական պրոբլեմների՝ հեղափոխական պայքարի ու կոմունիստական շինարարության պահանջներին համապատասխանող կոնկրետ լուծումներ։

Մարքսիզմ-լենինիզմի վերոհիշյալ առանձնահատկությունները բնութագրում են նրա գիտականությունը, կազմում նրա՝ որպես տեսության, անբաժան հատկանիշները։ Իսկ եթե նկատի ունենանք սոցիալական էությունը, ապա մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն հատկանիշը պրոլետարական հետևողական կուսակցականությունն է, բանվոր դասակարգի, աշխատավորների արմատական շահերի անդուլ պաշտպանությունը։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի մեջ պրոլետարական կուսակցականությունն օրգանապես զոդված է նրա գիտականության հետ։ Զարգացնելով Մարքսի գիտական մեթոդը՝ Լենինը համակողմանիորեն հիմնավորեց այն դրույթը, որ ամեն մի իրավիճակում գիտականորեն միակ ճիշտը, ստեղծագործականը, վերջին հաշվով, պրոլետարիատի հեղափոխական պայքարի, կոմունիստական շինարարության պրոբլեմների այնպիսի լուծումն է, որը համապատասխանում է իրադարձությունների օբյեկտիվ ընթացքին, հասարակության առաջադիմական ուժերին ցույց է տալիս կոմունիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարի իրական ուղին։

Այսպիսով, կոմունիստական կուսակցության հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին հատկանշվում է նրա հետևողական պրոլետարական կուսակցականությամբ, ժամանակակից գիտական գիտելիքների ողջ զինանոցն իրականության վերլուծության համար գործադրելու ունակությամբ։ Այդ ամենի նպատակն է լուծել կոմունիզմի պրոբլեմները, իրագործել աշխատավոր-

Նախ, քննարկենք կուսակցության քաղաքականության գիտականության և կուսակցականության միասնության սկզբունքը, դրա արծարծումը ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ և համագումարի մյուս նյութերում։

Ներքին քաղաքականության բնագավառում այդ սկզբունքն արտահայտվում է ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդրի դրվածքի ու դրա լուծման եղանակների մեջ։ Այդ խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա։ Բավական է պատկերացնել այս խնդրի, դրա լուծման նշանակությունն ու բարդությունը։ Այդ լուծումը պահանջում է օգտագործել ժամանակակից գիտության ողջ զինանոցը՝ հասկանալու, որ կուսակցականությունը, այսինքն՝ բանվոր դասակարգի, աշխատավորների շահերի պաշտպանությունը, իրականում, անհնար է առանց գիտության զարգացման ու դրա նվաճումների օգտագործման։ Քաղաքականության գիտականությունն այս առումով նրա կուսակցականության պարտադիր պայմանն է։

Նույն բանը կարելի է ասել նաև կուսակցության արտաքին քաղաքականության վերաբերյալ։ Այսպես, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի գլխավոր իմաստն այն է, ասաց Լ. Ի. Բրեժնևը XXV համագումարում, որ «հենվելով համաշխարհային սոցիալիզմի հզորության, համախմբվածության և ակտիվության վրա, բոլոր առաջադեմ ու խաղաղասեր ուժերի հետ նրա ամրապնդվող դաշինքի վրա, շրջադարձ ապահովել միջազգային հարաբերությունների զարգացման ասպարեզում» (էջ 4—5)։ Այս ծրագրի իրականացման հաջողությունները մեծապես պայմանավորված են այն բանով, որ մեր կուսակցությունը կարողացավ հստակորեն որոշել պրակտիկ գործունեության հիմնական խնդիրները միջազգային անվտանգության ամրապնդման գործում, ցույց տալ դրանց լուծման ուղիները՝ ելնելով միջազգային հարաբերություններում գործող օրինաչափություններից, այն տենդենցներից, որոնց ենթակա են սոցիալական ուժերն իրենց փոխադարձ կապի, փոխազդեցության մեջ և այլն։ Այժմ, թերևս, «աշխարհում չկա այնպիսի անկյուն, որի իրավիճակը այս կամ այն կերպ հարկ չլիներ հաշվի առնել մեր արտաքին քաղաքականությունը ձևավորելիս» (էջ 7)։

ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքականությունը ելնում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման առանձնահատկությունների, արդի փուլում սոցիալական ուժերի փոխհարաբերությունները բնորոշող տենդենցների գիտական վերլուծությունից։ Հեղափոխության զարգացման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունների խոր ըմբռնումը, «դրանց վրա հենվելը, զուգակցելով ստեղծագործական մոտեցման հետ և հաշվի առնելով յուրաքանչյուր տվյալ երկրի կոնկրետ պայմանները, եղել են և մնում են մարքսիստ-լենինյանների անկապտելի յուրահատկությունը» (էջ 50)։

> Վերցնենք, ասենք, ՏՓԽ-ի անդամ երկրների սոցիալիստական տնտեսական ինտեգրացման երկարաժամկետ ծրագրի մշակումն ու կենսագործումը։ Այդ ծրագիրն իրոք գիտական է. այն պահանջում է բոլոր համագործակցող երկրների գիտնականների, կուսակցական աշխատողների, գիտության և արտադրության կազմակերպիչների, համապատասխան պետական և այլ հիմնարկությունների համատեղ ջանքերը։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման բազայի վրա խարսխված տնտեսական ինտեգրացիան հնարավոր է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունները, յուրաքանչյուր երկրի էկոնոմիկայի առանձնահատկությունը, հսկայական քանակությամբ գիտատեխնիկական բարդ պրոբլեմների լուծումը խստորեն հաշվի առնելու դեպքում միայն։

Մարդկության սոցիալական առաջընթացի գլխավոր ուղղությունն արդի փուլում, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, որոշվում է սոցիալիզմի երկրների զարգացմամբ, նրանց հզորության աճով, նրանց վարած միջազգային քաղաքականության բարերար ազդեցության ուժեղացմամբ։ Դրա հետ կապված մյուս մոմենտը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումն է։ Ընդ որում, «կոմունիստները հեռու են պնդելուց, թե տեղի կունենա կապիտալիզմի «ինքնափլուզում»։ Նա դեռ բավական շատ ռեզերվներ ունի։ Սակայն վերջին տարիների իրադարձությունները նոր ուժով հաստատում են, որ կապիտալիզմը ապագայից զուրկ հասարակարգ է» (էջ 46)։ Դարաշրջանի իրոք գիտական վերլուծությունից բխող այս հիմնավոր բնութագրություններում որոշակիորեն նկատելի է պրոլետարական, կուսակցական մոտեցումը հասարակական կյանքի երևույթների նկատմամբ։

Կուսակցության քաղաքականության գիտականության և կուսակցականության միասնությունը, իրականում, ինչպես տեսնում ենք, քաղաքականության, տեսության ու պրակտիկայի օրգանական կապի արտահայտությունն է։ Հետևողական կոմունիստական կուսակցականությունն է հենց մարքս-լենինյան կուսակցություններին հնարավորություն տալիս իրականության տեսական վերլուծության գիտության բոլոր միջոցներն օգտագործել մասսաների հեղափոխական պայքարի, կոմունիստական շինարարության պրոբլեմների լուծման նպատակով։

Այնուհետև, քննարկենք հաջորդականության հարցը ՍՄԿԿ-ի քաղաքականության մեջ, որին մեծ ուշադրություն նվիրվեց կուսակցության XXV համագումարում։ Հաջորդականությունը պայմանավորված է առաջին հերթին կուսակցության վերջնական նպատակով՝ կոմունիստական հասարակարգի կառուցման խնդրով, որի կազմավորումը օրինաչափ պատմական պրոցես է։ Հաջորդականությունը հիմնվում է այն փաստի գիտական ըմբռնման վրա, որ կոմունիզմի յուրաքանչյուր պրոբլեմի լուծման համար պահանջվում են որոշակի կոնկրետ պայմաններ ու նախադրյալներ, որոնք միանգամից չեն կարող ստեղծվել, որ առանց կոմունիստական շինարարության ընթացիկ և երկարաժամկետ խնդիրները հստակորեն որոշելու չի կարելի մշակել ու կենսագործել ռեալիստական քաղաքականություն։ Դրա անմիջական արտահայտությունն է կուսակցության համագումարներում, Կենտկոմի պլենումներում, կուսակցական փաստաթղթերում մշակվող պրոբլեմների փոխադարձ կապը։ Համագումարից համագումար կուսակցությունը հարստացնում և խորացնում է պրոբլեմների տեսական ըմբռնումը, կոնկրետացնում դրանց լուծման ուղիներն ու միջոցները։ Այս առումով հատկանշական է, օրինակ, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման, աշխատավորների սոցիալական ակտիվության ու ստեղծարար ինքնագործունեության, գաղափարական աշխատանքի արդյունավետության բարձրացմանն առնչվող և այլ հարցեր, որոնք առաջադրվել էին կուսակցության XXIII և XXIV համագումարներում, հետևողականորեն զարգացան ու կոնկրետացան նրա XXV համագումարում։ Պրոպագանդիստն այդ ավելի կոնկրետ կարող է ցույց տալ, ասենք, կուսակցության տնտեսական քաղաքականության օրինակով, որտեղ հաջորդականության հարցը հանդես է գալիս, մասնավորապես, իբրև երկարաժամկետ պլանավորման և ընթացիկ խնդիրների փոխադարձ կապի պրոբլեմ։ Երկարաժամկետ պլանները խիստ անհրաժեշտ են դարձնում խիստ գիտական մոտեցումը ժամանակի մեջ առանձին փուլերի և դրանց փոխադարձ կապի խնդիրների նկատմամբ։

Բնականաբար, հարցի նման ըմբռնումը թելադրում է վերլուծել այն, ինչը կոչվում է **ստրատեգիա**՝ ընդհանրապես, տնտեսական ստրատեգիա՝ մասնավորապես։ Կենտկոմի հաշվետվության մեջ տեսականորեն ու խորությամբ մշակվել է այդ կատեգորիան։ Գործի էությունն ըմբռնելու համար այստեղ կարևոր է պարզել «նպատակ», «միջոցներ» և «խնդիրներ» հասկացությունների փոխադարձ կապը ստրատեգիայի շրջանակներում։

«Ինչպես որ ամեն մի ստրատեգիա, կուսակցության տնտեսական ստրատեգիան սկսվում է խնդիրների առաջադրումից, հիմնական, տևական նպատակների առաջադրումից... Տնտեսական ստրատեգիան ներառում է նաև միջոցների, այն ուղիների հստակ սահմանումը, որոնք տանում են դեպի առաջա-

դրված նպատակները» (էջ 65)։ Այսպիսով, ստրատեգիան հիմնական, տևական նպատակների որոշումն ու առաջադրումն է, դեպի այդ նպատակները տանող միջոցների հստակ որոշումը։ Իսկ այս կամ այն խնդրի լուծումը, ըստ էության, հանգում է որոշակի ստրատեգիայի մշակմանն ու իրականացմանը, որը նշանակում է գտնել տվյալ նպատակին հասնելու ուղիների ու միջոցների օգտագործման եղանակը։

Օրինակ, տասներորդ հնգամյակի գլխավոր խնդրի իրականացումը ենթադրում է հետևյալ միջոցների օգտագործումը. «հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավումը» (էջ 65)։ Ժողովրդական բարեկեցության բարձրացման նպատակով այս բոլոր միջոցների օգտագործումը կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացումն է։

Ինչպես նշվեց կուսակցության XXV համագումարում, արդի փուլում կուսակցության տնտեսական ստրատեգիան բնութագրվում է նրանով, որ արտադրության զարգացման մեջ շեշտը դրվում է դրա արդյունավետության և որակի բարձրացման վրա։ Այսպիսին է ստրատեգիայի կարևորագույն մասը կամ ստրատեգիական կողմնորոշումը։ Այստեղ կուսակցությունը հաշվի է առնում մի քանի առաջնահերթ հանգամանքներ՝ աշխատանքային ռեսուրսների պրոբլեմի հրատապությունը և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու անհրաժեշտությունը (տասներորդ հնգամյակում այս ցուցանիշի հաշվին պետք է ապահովվի արդյունաբերական արտադրանքի աճի մոտավորապես 90 տոկոսը, արտադրանքի ողջ աճը գյուղատնտեսության և շինարարության մեջ), արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման միջոցով ձեռքի աշխատանքը խիստ կրճատելու անհրաժեշտությունը, ռեսուրսներն ավելի ռացիոնալ օգտագործելու, արտադրանքի նյութատարությունն իջեցնելու, էժան ու արդյունավետ նյութեր կիրառելու անհրաժեշտությունը, շրջակա միջավայրի պահպանությանը միայն արտադրության արդյունավետության բարձրացմամբ ստացված ավելի ու ավելի շատ միջոցներ հատկացնելու անխուսափելիությունը, ինֆրաստրուկտուրան (տրանսպորտը, կապը, նյութական մատակարարման սիստեմը, ճանապարհաշինությունը, պահեստային տնտեսությունը և այլն) զարգացնելու կարևորությունը։

Ինչպես տեսնում ենք, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի աճի խնդրի լուծման ստրատեգիայի մշակումը պահանջում է խոր ու համակողմանի ուսումնասիրել մեր երկրի տնտեսական և սոցիալական կյանքի կոնկրետ փաստերը, նրա էկոնոմիկայի և կուլտուրայի, միջազգային իրադրությունը բնութագրող բազմապիսի գործոնները, օբյեկտիվորեն վերլուծել այն ուղիներն ու միջոցները, որոնք անհրաժեշտ են ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։ Ներքին և արտաքին քաղաքականության ամեն մի հարց մշակելիս՝ կուսակցությունը ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով։

Տեսության, քաղաքականության և պրակտիկայի միասնությունն արտահայտվում է նաև նրանում, որ, հիմնվելով մարքս-լենինյան մեթոդոլոգիայի սկզբունքների վրա, կուսակցությունն իր ներքին և արտաքին քաղաքականությունը մշակելիս, ելնում է երևույթների, պրոցեսների վերլուծության ընդհանուր գիտական և կոնկրետ գիտական մեթոդների կիրառման անհրաժեշտությունից։ Այդ կարելի է ցույց տալ ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային, սիստեմային մոտեցման օրինակով։ Դրա կիրառումը հնարավորություն է տալիս կոնկրետացնել դիալեկտիկայի ընդհանուր սկզբունքները, հանգել գործնական ճիշտ հետևությունների ու դրույթների։

1971 թվականին Մոսկվայի Բաումանյան ընտրական օկրուգի ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ պատասխանատու որոշումներ մշակելիս՝ կուսակցությունը հետևողականորեն ցուցաբերելու է կոմպլեքսային, սիստեմային մոտեցում (տե՛ս Լենինյան կուրսով, հ. 3, էջ 521)։



ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ մեր պետության արտաքին տնտեսական կապերի դերի ու ֆունկցիայի վերլուծությունը կոմպլեքսային մոտեցման օրինակ է։ Ինքնին ուշագրավ է և այն փաստը, որ այստեղ արտաքին տնտեսական կապերի զարգացման հարցն առանձնացված է որպես արդի փուլում մեր էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմներից մեկը։ Երկրի ամբողջ էկոնոմիկայի, դրա զարգացման պրոցեսներում ներքինի ու արտաքինի դիալեկտիկական փոխադարձ կապի տեսակետից, արտաքին տնտեսական կապերը դիտվում են իբրև տնտեսական խնդիրների հաջող լուծման, արտադրության արդյունավետության բարձրացման և գիտության ու տեխնիկայի առաջընթացի արագացման լրացուցիչ հնարավորությունների մոբիլիզացման միջոց։

Կոմպլեքսային, սիստեմային մոտեցման հետ է կապված նաև կառավարչական և ամենից առաջ պլանային գործունեությունը ժողովրդատնտեսական վերջնական արդյունքների ապահովմանը ենթարկելու խնդիրը։ Տվյալ խնդիրը, որի լուծմանը մեծ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXV համագումարը, ավելի ու ավելի հրատապ է դառնում էկոնոմիկայի բարդացման առնչությամբ, քանի որ վերջնական արդյունքներն ավելի ու ավելի են պայմանավորվում բազմաթիվ միջակա օղակներով, ներճյուղային և միջճյուղային կապերի ողջ սիստեմով։ Այստեղ վերջնական նպատակը հենց ամբողջի (ամբողջ տնտեսական մեխանիզմի կամ ճյուղի, արտադրության ավարտված ցիկլի և այլն) արդյունավետ գործունեության արդյունքն է, որն ունի սիստեմային կառուցվածք. սիստեմի նորմալ կենսագործունեությունը պետք է ապահովվի նրա յուրաքանչյուր մասով, որը կատարում էր իր հատուկ ֆունկցիան ամբողջի շրջանակներում։

Քաղաքականության պրոբլեմները մշակելիս մարքսիզմ-լենինիզմի հետևությունների և դրույթների, ժամանակակից գիտության գիտական մեթոդոլոգիայի ողջ զինանոցի օգտագործումը կուսակցության գործունեության մեջ անբաժանելի է քննադատության և ինքնաքննադատության մեթոդի հետևողական կիրառումից, որը լենինյան ոճի բնորոշ հատկանիշն է քաղաքական գործունեության մեջ։ Կուսակցության փաստաթղթերում քննադատությունն ու ինքնաքննադատությունը համարվում են աշխատանքում եղած թերությունների բացահայտման և վերացման, տեսության և պրակտիկայի չլուծված պրոբլեմների հայտաբերման հզոր միջոց։ Հետևելով Լենինին՝ կուսակցությունը ելնում է այն իրողությունից, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը պետք է ստեղծարար, կոնստրուկտիվ սկզբունք լինեն աշխատանքային, հասարակական գործունեության մեջ, որ դրանց նպատակը կոմունիստական շինարարության պրոբլեմների դրական լուծումն է։ Որքան մեծ է պրոբլեմների հասարակական նշանակությունը, նույնքան արժեքավոր է դրանց շուրջ ծավալված քննադատությունը։

«Տնտեսական գործունեության արդյունքների խոր, կուսակցական պահանջկոտությամբ ներթափանցված վերլուծությունը,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— պետք է նոր փորձի, ստեղծագործական նոր որոնումների, նոր եռանդի աղբյուր ծառայի» (էջ 64)։ Այս միտքը հարկավոր է առանձնապես շեշտել։ Թերություններն ու չլուծված, նոր պրոբլեմները բացահայտող քննադատական վերլուծությունը նոր փորձի աղբյուր է, ապագայի պլանների գիտական հիմնավորման անհրաժեշտ պայման։ Այնուհետև, վկայակոչելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» և բնութագրելով քննադատության և ինքնաքննադատության մեթոդի էությունը՝ որպես լենինյան ստեղծագործական ոճի, ընկեր Լ. Ի. Բրեժնևն առանձնացրեց դրա հետևյալ կողմերը. այս կամ այն կազմակերպության գործունեության օբյեկտիվ գնահատականը, եղած թերությունների համակողմանի վերլուծությունն ու դրանց վերացումը, ամեն մի լիբերալիզմի բացառում, քննադատության արժարժած հարցերի հասարակական արժեքը, դրա ճշմարտացիությունը, անկեղծ ինքնաքննադատությունը (տե՛ս էջ 113)։ Մենք լենինաբար կվարվենք,— ասաց նա XXV համագումարի եզրափակման խոսքում,— «եթե, պատշաճը հատուցելով ձեռք

բերվածին, ուշադրությունը կենտրոնացնենք մեզանում դեռևս գոյություն ունեցող թերությունների վրա, չլուծված խնդիրների վրա», քանի որ «գործի նկատմամբ հենց այդպիսի մոտեցումն ամենից ավելի լավ կնպաստի կոմունիստների և մեր ողջ ժողովրդի քաղաքական ակտիվության ու ստեղծագործական եռանդի աճին» («Լենինյան ուղիով» ամսագիր, 1976, № 3, էջ 79):

Ամփոփելով այս բաժնում ասվածը՝ հարկավոր է ընդգծել տեսության և պրակտիկայի կապի՝ որպես կուսակցության քաղաքականության սկզբունքի, մարքս-լենինյան ըմբռնման մի կարևոր կողմ ևս: Քաջ հայտնի է, որ տեսության գերագույն դատավորը պրակտիկան է, այն ճշմարտության գլխավոր չափանիշն է: Պրակտիկ փորձը համարելով տեսության հետևությունների գնահատման չափանիշ, մարքսիստներն ամենևին չեն կարծում, սակայն, թե հարկավոր է ձեռքերը ծալած սպասել պրակտիկայի դատավճռին:

Այս դրույթը բացահայտելու համար կարելի է դիմել, օրինակ, Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտահայտած մտքերին: Նկատի ունենալով, որ ճիշտ քաղաքականություն մշակելու համար անհրաժեշտ է լրջորեն ուսումնասիրել եղբայրական կուսակցությունների փորձը, նա ասաց. «...այս կամ այն դրույթի ճշտության կամ, հակառակը, սխալականության չափանիշը կարող է լինել միայն պրակտիկ փորձը; բայց մինչև պրակտիկան հանի իր վերջնական դատավճիռը, հնարավորություն և անհրաժեշտություն կա այդ դրույթներն ստուգելու ընկերական դիսկուսիայում՝ տարբեր կուսակցությունների տեսակետներն ու փորձը լայնորեն համադրելու միջոցով»:

Մասսաների ստեղծագործական գործունեությունն անհնար է առանց տեսական ճիշտ կողմնորոշիչների, որոնք ստացվել են դրանց նախորդած փորձի վերլուծության, կոմունիստական շինարարության պրակտիկայի նոր խնդիրների լուծման տարբեր վարիանտների քննարկման, բարդ, վիճելի հարցերի պարզաբանման միջոցով: Այլ խոսքով, նախորդ փորձի, պրակտիկայի համակողմանի ուսումնասիրում, հասունացած պրոբլեմների տեսական իմաստավորում, դրա հիման վրա պրակտիկ քաղաքականության մշակում, մասսաների կազմակերպում— ահա տեսության, քաղաքականության և պրակտիկայի փոխադարձ կապի դիալեկտիկան մարքս-լենինյան կուսակցության գործունեության մեջ:

## ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԻ ՔԱՆԻ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

ՍՄԿԿ XXV համագումարի նյութերում առավել զարգացվել են գիտական կոմունիզմի արմատական պրոբլեմները, որոնք կապված են նոր հասարակարգի կառուցման ծրագրային խնդիրների՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական նոր հարաբերությունների առաջացման և համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորման հետ: Այդ մասին արդեն խոսվել է վերևում: Այստեղ մենք կփորձենք առանձնացնել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդրի հետ կապված մի քանի հարցեր: Այդ հարցերի մշակման գործում կուսակցության XXV համագումարը նշեց մի շարք կարևոր ուղղություններ, որոնք համապատասխանում են մեր երկրի զարգացման ներկա փուլի պահանջներին: Դրանց քննարկումը կօգնի՝ կոնկրետացնելու կուսակցության տնտեսական ստրատեգիայի, արդի փուլում նրա տնտեսական քաղաքականության բնութագրումը:

Տվյալ հարցի առնչությամբ, որպես հիմնական նյութ, պետք է հատկապես խորությամբ ուսումնասիրել, առաջին հերթին, ՍՄԿԿ XXV համագումարին կուսակցության Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման երկրորդ բաժինը, ինչպես և «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները»: Մեթոդական առումով այստեղ նպատակահարմար է առանձնացնել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի զարգացման գլխավոր տենդենցներն արդի փուլում:



Հասուն սոցիալիստական հասարակարգի պայմաններում նյութատեխնիկական բազայի ստեղծման արմատական առանձնահատկությունն ամենից առաջ այն է, որ այժմ առաջնային են դառնում տնտեսական աճի ինտենսիվ գործոնները: Ողջ տնտեսական զարգացման առանցքային պրոբլեմը արտադրության արդյունավետության բարձրացումն է՝ գիտատեխնիկական հեղափոխության հետ կապված ինտենսիվ գործոնների համակողմանի օգտագործմամբ: Կուսակցության XXIII և XXIV համագումարների նյութերում, նրա մյուս փաստաթղթերում արտահայտված այս միտքը հետագա զարգացում ստացավ ՍՄԿԿ XXV համագումարում: Գիտատեխնիկական հեղափոխությունը բացում է ժողովրդական տնտեսության ինտենսիվացման այնպիսի հեռանկարներ, որոնց հետ սկզբունքորեն չի կարելի համեմատել էքստենսիվ զարգացման հնարավորությունները, մանավանդ որ ներկայումս դրանք հիմնականում սպառված են:

Կենտկոմի հաշվետվության մեջ ցույց է տրված, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղափոխությունը ձեռք բերում մարդկության և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն: Միաժամանակ «միայն գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ» (էջ 77): Գիտատեխնիկական հեղափոխության այս սկզբունքային բնութագրումից բխող հանգուցային պրոբլեմը համարվում է ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած պատմական խնդիրը՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ: Սա մնում է իբրև բացառիկ հրատապ խնդիր և՛ ներկա հնգամյակում, և՛ ավելի տևական հեռանկարում, քանի որ դրա հաջող լուծմամբ հսկայական չափով պայմանավորված են սոցիալիստական արտադրության ինտենսիվացումը, դրա արդյունավետության բարձրացումը: Իսկ բարձր արդյունավետությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ամենաէական հատկանիշներից է:

Ժողովրդական տնտեսության ինտենսիվացման հիմնական ցուցանիշներն են, ինչպես հայտնի է, աշխատանքի արտադրողականության արագ աճը, ֆոնդահատույցի բարձրացումը և արտադրանքի նյութատարության իջեցումը: Այս առումով խիստ հարկ է քննարկել այն փաստական տվյալները, որոնք բնութագրում են իններորդ հնգամյակի արդյունքները և նոր՝ տասներորդ հնգամյակի հիմնական առաջադրանքները, նկատի ունենալով ինչպես ամբողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ արդյունաբերության և գյուղատնտեսության ցուցանիշները՝ առանձին: Պարապմունքին նախապատրաստվելու և այն անցկացնելու պրոցեսում նպատակահարմար է, որ պրոպագանդիստն օգտագործի տվյալ շրջանին, քաղաքին, ձեռնարկությանը վերաբերող համապատասխան համակարգված նյութ:

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումն արտադրության ոլորտում ունի երկու էական կողմ: Նախ, այն պահանջում է հիմնարար գիտությունների, բնա-տեխնիկական և հասարակական գիտությունների բնագավառում հիմնարար հետազոտությունների համակողմանի զարգացում, քանի որ «գիտատեխնիկական առաջընթացի ջրառատ հունը կցամաքի, եթե այն մշտապես չսնուցվի հիմնարար հետազոտություններով» (էջ 78): Եվ, երկրորդ, այն պահանջում է մշտական ուշադրություն արտադրության հետ գիտության կապի՝ սոցիալիստական հարաբերություններին հատուկ արդյունավետ ձևերի որոնումներին:

Սոցիալիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի զարգացման մյուս կարևոր կողմը արտադրության պրոգրեսիվ ճյուղային կառուցվածքի ձևավորումն է, որն ունակ է ապահովելու տարբեր ճյուղերի, ողջ ժողովրդական տնտեսության հաշվեկշռված, համամասնական ու ներդաշնակ զարգացումը: Այս առումով տնտեսական ստրատեգիայի բնութագրման համար կարևոր է նաև հետևյալը.

Ժողովրդական տնտեսության զարգացման ավելի մեծ հաշվեկշռվածություն և համամասնություն ապահովելու, աշխատանքի որակական ցուցանիշ-

ների բարձրացման համար ավելի լավ պայմաններ ստեղծելու նպատակով տասներորդ հնգամյակում մի շարք ճյուղերում նախատեսված են աճի ավելի ցածր տեմպեր, քան իններորդ հնգամյակում։

Ժողովրդական տնտեսության ճյուղերի բալանսավորման, արտադրության կառուցվածքի բարելավման ապահովման պրոբլեմի կապակցությամբ կարելի է հատկապես անդրադառնալ գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման, առևտրի և աշխատավորների կենցաղսպասարկման բարելավման վերաբերյալ կուսակցության XXV համագումարի առաջադրած հարցերին։ Այստեղ կարևոր է, մասնավորապես, այն հարցադրումը, որ սոցիալիզմի օրոք ժողովրդի բարեկեցության աճը արտադրության արդյունավետության բարձրացման պայման է։ Սպառման և ծառայությունների ոլորտի զարգացումն անմիջականորեն արտացոլվում է աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման գործում, նպաստում նրանց կուլտուրական աճին, հասարակության անդամների աշխատանքային ակտիվության վերելքին։ Սպառման և ծառայությունների ոլորտի զարգացումը պայմանավորում է քանակական և որակական փոփոխություններն արտադրության և սպառման հարաբերակցության մեջ, ներգործում կյանքի մյուս ոլորտների վրա։ Այլ խոսքով, բարձրանում է սպառման տնտեսական դերը՝ որպես ողջ արտադրության արդյունավետության վրա ներազդող գործոն։

Պարապմունքներում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման հարցերը քննարկելիս՝ հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել «Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը։ Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հիման վրա մասնագիտացման և համակենտրոնացման խորացումը, գյուղատնտեսության փոխադրումը ժամանակակից ինդուստրիալ բազայի վրա սկզբունքային նշանակություն ունեն ամբողջ արտադրության կառուցվածքի բարելավման, կոմունիստական շինարարության արմատական պրոբլեմների լուծման համար։ Դրանք կնպաստեն գյուղատնտեսական արտադրանքի արտադրության արագ աճին, արտադրության արդյունավետության, կոլտնտեսային արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացմանը։ Իսկ դա, վերջին հաշվով, նշանակում է հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործում, սեփականության երկու ձևերի մերձեցում, քաղաքի և գյուղի էական տարբերությունների աստիճանական վերացում։

Վերջապես, հասուն սոցիալիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի զարգացման կարևոր միտումը կառավարման, ողջ ժողովրդական տնտեսության ղեկավարման միասնական և միաժամանակ ներքին տարբերակված համակարգի ստեղծումն է, գիտության ու տեխնիկայի, արտադրության ճյուղերի զարգացման լավագույն ուղղությունների գիտական համակողմանի հաշվարկումների ու կանխատեսումների վրա հիմնված պլանավորման սիստեմի ստեղծումը։

Սոցիալիստական պլանավորման լուրջ կատարելագործում, կառավարչական և, ամենից առաջ, ժողովրդատնտեսական վերջնական արդյունքներ ընդգրկող պլանային գործունեություն, տնտեսական խթանների ու լծակների ավելի հմուտ օգտագործում, կառավարման կազմակերպական կառուցվածքի ու մեթոդների բարելավում— ահա սրանք են տվյալ հարցում կուսակցության քաղաքականության սկզբունքային դրույթները, որոնք ձևակերպված են ՍՄԿԿ XXV համագումարին ընկեր Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ։ Դրանց իրականացումը կոմունիստական շինարարության գործում հաջողությունների հասնելու վճռական պայմանն է։

Կոմունիստական շինարարության տեսության մեջ ու պրակտիկայում կուսակցության XXV համագումարի ներդրումը կարելի է ցույց տալ նաև հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման պրոբլեմների, գաղափարական աշխատանքի, սոցիալիստական ապրելակերպի հետագա կատարելագործման հարցերի մշակման օրինակով։ Այս կոնսուլտացիայում, չշոշափելով այդ հարցերը, նշենք միայն, որ, վերջին հաշվով, սոցիալական բոլոր պրոբլեմների լուծման դեպքում հիմքը կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացումն է։ Տվյալ դեպքում հարկավոր է հիշել այն կարևոր մեթոդոլոգիական դրույթը, որ կուսակցությունն ինքնանպատակ չի համարում արտադրության զարգացումը և ժողովրդի կյանքի նյութական մակարդակի բարձրացումը, այլ հարցին մոտենում է՝ հաշվի առնելով կոմունիստական շինարարության գլխավոր ծրագրային խնդիրները։ Այդպիսի ծրագրային նպատակներ են, առաջին հերթին, քաղաքի և գյուղի աշխատավորների կենսապայմանների մերձեցումը, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացումը, որոնցով, ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը պայմանավորում էր կոմունիզմի վերջնական նպատակի իրականացումը՝ անդասակարգ սոցիալապես միատարր հասարակության կառուցումը։

Կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ անմիջականորեն առնչվող այս բոլոր, ինչպես և շատ այլ հարցերի մշակումը մեր կուսակցության կողմից վկայում է, որ ՍՄԿԿ-ն ավելի ու ավելի խորությամբ է տիրապետում կոմունիստական հասարակարգի ձևավորման օրինաչափություններին, որ կուսակցության տեսական աշխատանքի մակարդակը շարունակ աճում է գիտական կոմունիզմի տեսության հետևությունների կոնկրետացման ու զարգացման ընթացքում։ Ողջ ասվածի պրակտիկ հաստատումն այն է, որ կուսակցության բոլոր սկզբունքային դրույթները մարմնավորվում են սոցիալիզմի իրական հաջողություններում, սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքում. պրակտիկան է տեսության ճշմարտացիության ամենաստույգ չափանիշը։

«Политическое самообразование», 1976, № 8

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ՄԱՐԴՈՒ ԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ՓՈԽԱԶԴԵՑՈՒԹՅԱՆ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԳՏՀ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Մարդը բնության մասնիկն է, երկրագնդի կենդանական աշխարհի էվոլյուցիայի օրինաչափ արգասիքը: Ակընհայտ է, որ բնությունը, իսկ ավելի ճիշտ՝ նրա այն մասը, որը հայտնի է որպես երկրագնդի բիոսֆերա (կենսաոլորտ), մարդու կենսագործունեության անհրաժեշտ պայմանն է, նրա գործունեության անմիջական բնական միջավայրը: Մարդկային հասարակությունը մի բնական համակարգ է, այսպես կոչված՝ բաց համակարգ, որը շրջապատի հետ կատարում է ո՛չ միայն էներգիայի, այլև նյութի փոխանակություն: Նման փոխանակություն կատարում է կենդանական աշխարհն ընդհանրապես, և հասարակության յուրահատկությունը ոչ թե այդ փոխանակության անհամեմատելի խոշոր չափերն են, այլ փոխանակության միայն իրեն հատուկ եղանակը՝ արտադրությունը, շրջակա միջավայրի գիտակցված-նպատակադիր փոփոխումը: Դա, ինչպես Կ. Մարքսն է նշում, մարդուն առանձնացնում է մնացած կենդանական աշխարհից նրանով, որ նա վերարտադրում է ո՛չ միայն իրեն, այլև իր գոյության պայմանները:*

*Աշխատանքի, նյութական բարիքների արտադրության շնորհիվ մարդու և բնության փոխհարաբերությունը վերածվում է փոխազդեցության, փոխներգործության, ստեղծում է բնության վրա իշխելու հնարավորություն, որի հետևանքով մարդը ո՛չ միայն և ո՛չ այնքան հարմարվում է բնությանը, որքան այն հարմարեցնում է իր կենսագործունեությանը: Այսպիսով, մարդու և բնության փոխհարաբերությունը դրսևորվում է որպես արտադրահարաբերություն, իբրև մարդամիջյան փոխհարաբերություն՝ դրանից բխող բոլոր սոցիալական հետևանքներով:*

*Իսկ մարդու ու բնության փոխներգործության չափերն ու բնույթն էլ ի վերջո որոշվում են հասարակության արտադրաուժերի զարգացման աստիճանով, բնության օրինաչափությունների մեր իմացության մակարդակով և հասարակության արտադրա-տնտեսական ու սոցիալական հարաբերությունների բնույթով:*

*Մարդ-բնություն փոխհարաբերությունը որոշակի հավասարակշռության է հասնում, երբ և՛ բնության մեջ տարերայնորեն կատարվող, և՛ մարդու կողմից գիտակցորեն բնության վրա ազդելու հետևանքով առաջացող փոփոխություններն արմատականորեն չեն փոխում մարդու կենսագործունեության պայմանները: Բայց այդ հավասարակշռությունը, որն այժմ ընդունված է անվանել էկոլոգիական* հավասարակշռություն, դինամիկ պրոցես է և կարող է խախտվել մարդուց անկախ բնական միջավայրի, ինչպես և մարդու գործունեության ազդեցությամբ առաջացող փոփոխությունների հետևանքով: Այդպիսի խախտումներն առաջացնում են մարդ-բնություն փոխհարաբերության ճգնաժամեր, այսօրվա տերմինաբանությամբ՝ էկոլոգիական ճգնաժամեր, այսինքն՝ այնպիսի վիճակներ, որոնք լուրջ սպառնալիք են ստեղծում մարդու նորմալ կենսագործունեության և բուն իսկ գոյության համար:*

*Ի տարբերություն կենդանական աշխարհի, ուր էկոլոգիական ճգնաժամերը միայն բնության տարերային ուժերի հետևանք են, հասարակական զարգացման ընթացքում դրանք առաջանում են նաև (և ավելի հաճախ) մարդու գործունեության հետևանքով և դրա համար էլ կոչվում են անտրոպոգեն, այսինքն՝ մարդու հարուցած էկոլոգիական ճգնաժամեր: Դրանց էությունն այն է, որ մարդը վերափոխիչ գործունեությամբ, բնական միջավայրը հարմարեցնելով իր նպատակներին, բարելավելով իր գոյության անմիջական պայմանները, միաժամանակ հարուցում է այնպիսի հետևանքներ, որոնք ի վերջո դժվար օգտագործելի կամ ուղղակի անօգտագործելի են դարձնում շրջակա միջավայրը, վտանգ են ստեղծում հենց իր՝ որպես կենդանական տեսակի գոյության և հետագա հասարակական զարգացման համար:*

*Առաջին հայացքից թվում է, թե դա անհավանական է, քանի որ մարդը բնությունը վերափոխում է գիտակցաբար, այն նպատակադիր հարմարեցնելով իր կենսագործունեությանը, բարելավում է անհարմար միջավայրը՝ անապատը դարձնում է ծաղկած այգեստան, ցուրտ վայրերում կառուցում է տաք բնակարաններ, բազմացնում է իրեն անհրաժեշտ բույսեր ու կենդանիներ, կատարելագործում և ավելի բերքատու ու մթերատու դարձնում դրանք: Նշելով, որ «...կենդանին միայն օգտվում է արտաքին բնությունից և նրա մեջ փոփոխություններ է առաջացնում պարզապես միայն իր ներկայությամբ, իսկ մարդն իր մտցրած փոփոխություններով նրան ստիպում է ծառայել իր նպատակներին, իշխում է նրա վրա», Ֆ. Էնգելսն անմիջապես ավելացնում է. «Սակայն շատ էլ չհրապուրվենք բնության նկատմամբ տարած մեր հաղթանակներով: Յուրաքանչյուր այդպիսի հաղթանակի համար նա մեզնից վրեժխնդիր է լինում: Այդ հաղթանակներից յուրաքանչյուրը, ճիշտ է, առաջին հերթին ունենում է այն հետևանքները, որ մենք նկատի էինք առել, բայց երկրորդ ու երրորդ հերթին ունենում է միանգամայն այլ, չնախատեսված հետևանքներ, որոնք շատ հաճախ ոչնչացնում են առաջինների նշանակությունը» (Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա: Ե., 1969, էջ 178): Էնգելսը հիշատակում է մի շարք պատմական փաստեր հին Հունաստանում, Իտալիայում, Մերձավոր Արևելքում մարդու վերափոխիչ գործունեության հետևանքով լեռնալանջերի լերկացման և հարթավայրերի անապատացման վերաբերյալ:*

*Արդ ո՞րն է մարդու կողմից շրջակա միջավայրի վերափոխման բացասական հետևանքների պատճառը: Առաջին հերթին, ինչպես նշում է Էնգելսը, դա մարդկանց անկարողությունն է կանխատեսելու իրենց գործողությունների հեռավոր հետևանքները: Բայց դա հավերժական գործոն չէ, քանի որ մարդկության զարգացումը միաժամանակ և նրա իմացական կարողության անընդհատ հզորացումն է, նրա ունակությունը՝ հետզհետե ավելի լայն մասշտաբներով ու ավելի խոր ճանաչելու բնության օրենքներն ու ճշտորեն կիրառելու դրանք: Այդ հանգամանքի դրսևորումը գիտության, մասնավորապես բնագիտության բուռն զարգացումն է և նրա միավորումն արտադրության հետ, որը, Էնգելսի խոսքերով ասած, մեզ ունակ է դարձնում «...հաշվի առնել նաև արտադրության բնագավառում մեր կատարած գործողություններից գոնե ամենից*

---

* *Էկոլոգիան մի գիտություն է, որն ուսումնասիրում է կենդանի օրգանիզմների և միջավայրի փոխհարաբերությունը: Մեր օրերում ձևավորվում է, այսպես կոչված, սոցիալական էկոլոգիան, որը սոցիոլոգիայի մի բաժին, որն ուսումնասիրում է մարդու և միջավայրի (այդ թվում և սոցիալական միջավայրի) փոխհարաբերության պրոբլեմները:*

ցումով, և՛ հատկապես գործնական կիրառումով կախված են հասարակական կարգից և դրա համար էլ կիրառման արդյունքները միշտ էլ պայմանավորված են այն հասարակական ուժերի բնույթով, որոնք դրանց շարժման մեջ են դնում, այն նպատակներով, որոնք մարդիկ հետապնդում են գիտության ու տեխնիկայի նվաճումները կիրառելու պրոցեսում։ Եվ հենց այդ պատճառով էլ դրանց կիրառումը կարող է հանգեցնել մարդկության համար և՛ դրական, և՛ խիստ բացասական հետևանքների։

Կ. Մարքսը, բացահայտելով հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, հանգեց այն եզրակացության, որ կուլտուրան, եթե այն զարգանում է տարերայնորեն, և ոչ թե նրան գիտակցաբար ուղղություն է տրվում, իրենից հետո անապատ է թողնում։ Կուլտուրան իրենից հետո այդպիսի անապատներ է թողնում այն հասարակարգերում, ուր արտադրության ու գիտության շարժիչ ուժը, ուղղություն տվողը մասնավոր շահն է։ Ֆ. Էնգելսը, զարգացնելով այդ միտքը, նշել է, որ մասնավոր սեփականության վրա հիմնված արտադրության ժամանակ, որի բարձրագույն դրսևորումը կապիտալիստական արտադրաեղանակն է, «Արտադրության և փոխանակության վրա իշխող առանձին կապիտալիստները կարող են հոգալ իրենց գործողությունների ամենից ավելի անմիջական օգտակար էֆեկտների համար միայն։ Դեռ ավելին. անգամ բուն այդ օգտակար էֆեկտը— որքանով որ խոսքը վերաբերում է արտադրվող կամ փոխանակվող ապրանքի օգտակարությանը, քաշվում է բոլորովին հետին պլանը, և միակ շարժիչ զսպանակը դառնում է վաճառքի ժամանակ շահստացումը» (Բնության դիալեկտիկա, էջ 181)։

ՄԱՐԴԸ ԲԱՆԱԿԱՆ Է, ԵՎ ԵԹԵ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ կուրորեն է ազդում մարդու վրա, ապա մարդը բնության վրա ազդում է գիտակցորեն, իր առջև որոշակի նպատակներ դնելով։ Բայց մարդու նպատակներն ի վերջո որոշվում են նրա սոցիալական վիճակով, իր ապրած դարաշրջանի ու բնակած երկրի հասարակական հարաբերությունների պահանջներով։ Ուստի բնական է, որ մասնավոր շահի վրա հիմնված հասարակության մեջ անհատական շահը, անձնական բարեկեցության մղումը չեն համընկնում ո՛չ միայն հասարակության մեծամասնության, այլև մարդկության ընդհանուր շահերի հետ՝ մասնավորապես բնության նկատմամբ վերաբերմունքի հարցում։ Մասնավոր սեփականատիրոջ համար իր գործողությունների բարձրագույն չափանիշը շահույթն է, որի համար նա պատրաստ է ոտնահարել մարդկության շահերը, անմիջական օգուտի համար վտանգել ուրիշների և ամբողջ մարդկության ապագան։

Հարց է ծագում, ինչո՞ւ ԳՏՀ բացասական հետևանքները վերագրվում են միայն կապիտալիզմին, երբ աշխարհում գոյություն ունեն երկու հակադիր համակարգեր՝ սոցիալիստական և կապիտալիստական, երկուսում էլ ծավալվում է գիտա-տեխնիկական հեղափոխությունը և բնական միջավայրի վրա բացասական ազդեցության մի շարք երևույթներ դրսևորվել են նաև սոցիալիստական համակարգի երկրներում։

Նախ, կապիտալիզմի մի քանի դար տևող տարերային, անպլանային զարգացումը վաղուց անտրոպոգեն լոկալ էկոլոգիական ճգնաժամեր է ծնել։ Հիշենք, թեկուզ, առաջին զարգացած կապիտալիստական երկիրը՝ Անգլիան, ուր արդեն մեկ դար առաջ խոշոր արդյունաբերական կենտրոնները դարձել էին շրջակա միջավայրն ապականող ու մարդու բնակության համար անտանելի պայմաններ ունեցող վայրեր։ Այսօր մարդու և բնության փոխհարաբերության հավասարակշռության խախտման ամենախոշոր գոտիները հենց ամենազարգացած կապիտալիստական երկրներն են՝ ԱՄՆ-ը, ԳՖՀ-ն, Ճապոնիան, այնուհետև՝ Անգլիան, Իտալիան, Ֆրանսիան, Շվեդիան։

Գրականության մեջ բազմաթիվ փաստեր են նշվել առանձնապես այդ երկրներում բնական միջավայրի ապականման վերաբերյալ։ Բերենք միայն տնտեսագիտության դոկտոր Ա. Մ. Շարկովի հոդվածում նշված մի քանի փաստերը (տե՛ս А. М. Шарков. Коммунисты и охрана окружающей среды. «Рабочий класс и современный мир», 1975, № 5).



ԱՄՆ-ում Մեծ լճերը, հատկապես Էրի լիճը, ինչպես և բազմաթիվ գետեր վերածվում են մեռյալ ջրամբարների և համաշխարհային օվկիանոս են տանում վիթխարի քանակով արտադրության թունավոր թափոններ։ ԱՄՆ-ի միայն խոշոր քաղաքների օդի աղտոտումից առաջացած վնասը տարեկան հասնում է 16 մլրդ դոլարի։ Այստեղ տարեկան կուտակվում են այնքան շատ քաղաքային թափոններ (130 մլն տոննա), որ ամերիկացիները դառնությամբ կատակում են, թե աղբահորերը շուտով մարդկանց համար ապրելու տեղ չեն թողնի։ ԱՄՆ-ում մթնոլորտի, ջրի և հողի աղտոտումն այնպիսի չափերի է հասել, որ լրջորեն ազդում է հարևան Կանադայի բնական միջավայրի վրա։ Ռուսերեն թարգմանությամբ հրապարակված ամերիկյան հեղինակներ Օ. Դուգլասի Երեքհարյուրամյա պատերազմ և Ռ. Պարսոնսի Բնությունը հաշիվ է ներկայացնում հետազոտությունները հարյուրավոր նման փաստեր են պարունակում և, թերևս հեղինակների կամքից անկախ, ակնհայտ են դարձնում, որ աշխարհի խոշորագույն կապիտալիստական երկրներում բնական միջավայրի անխնա ապականումն արտադրության կապիտալիստական եղանակի ծնած անպլանայնության և դաժան մրցակցության անխուսափելի և ուղղակի հետևանք է։

ԳՖՀ-ում մամուլը համարյա ամեն օր հաղորդումներ է հրապարակում նոր բացահայտված «գաղտնարանների» մասին, ուր գործարանատերերը, օրենքները խախտելով, թափում են արտադրության վնասակար մնացորդները (ցիանական և այլ միացություններ), որոնք կարող են ամբողջ շրջանների կենդանական աշխարհը ոչնչացնել։ Միայն Հռենոս գետը տարեկան թափվում են 85 տոննա սնդիկ, 6.500 տոննա կապար, 2.000 տոննա սպիտակ մկնդեղ և նշանակալի քանակով խիստ վտանգավոր այլ թունավոր նյութեր, որոնց մեծ մասը գետի ջրերով տարվում է Հյուսիսային ծով, իսկ այնուհետև՝ Ատլանտյան օվկիանոս։

Ինչպես իրավացիորեն նշում է Ա. Մ. Շարկովը, արդյունաբերության տարերային համակենտրոնացման, բնական միջավայրի նկատմամբ մոնոպոլիաների գիշատիչ վերաբերմունքի կործանարար հետևանքները և բնության պահպանման միջոցառումների անբավարարությունն առանձնապես բարձր չափերի են հասել Ճապոնիայում, ուր արդյունաբերական ու շինարարական ձեռնարկությունները մթնոլորտ, ծովերի ու գետերի ջրերը և հողի վրա են նետում տարեկան մոտ 700 մլն տոննա թափոններ, որոնք ո՛չ միայն աղտոտում, այլև թունավորում են շրջակա միջավայրը։

Եթե դրան ավելացնենք իմպերիալիստական երկրների կողմից աշխարհի բազմաթիվ, մասնավորապես ոչ հեռու անցյալում գաղութային վիճակում գտնվող, իսկ այժմ՝ ազատագրումից հետո դեռևս թույլ զարգացած երկրների բնական ռեսուրսների անխնա շահագործումն ու թալանը, ապա ավելի լրիվ կլինի կապիտալիստական հասարակարգի կողմից երկրագնդի բնական միջավայրին հասցրած վնասի պատկերը։

Կա մի հանգամանք ևս, որը խորացնում, ավելի վտանգավոր է դարձնում նշված տենդենցները. դա արտադրամիջոցների մասնավոր սեփականության անխուսափելի ուղեկից պատերազմներն են. այդ վտանգը դրսևորվում է անմիջական ռազմական գործողությունների, նվաճողական պատերազմների միջոցով հարձակման ենթարկված երկրների կենդանական ու բուսական աշխարհի զանգվածային ոչնչացումով, մթնոլորտի, հողի ու ջրի ապականումով ու թունավորումով (էլ չենք խոսում մարդկանց բնաջնջման մասին), ինչպես և այդ նպատակների համար մարդկանց զանգվածային բնաջնջման ու շրջակա միջավայրը թունավորող ատոմային, ջերմամիջուկային, բակտերիոլոգիական, գեոֆիզիկական զենքի ստեղծումով, դրանց վիթխարի պաշարների կուտակման նպատակով սպառազինությունների մրցավազքի հրահրումով։ Իմպերիալիզմը, ստեղծելով ու կուտակելով նման զենքերը, սոցիալիստական համակարգի երկրներին դրդում է իր միջոցների մի մասը ծախսել պաշտպանական նպատակով սպառազինության վրա։ Բանը ո՛չ միայն այն է, որ համաշխարհային կապիտալիզմն այսօր արդեն վիթխարի (տարեկան ավելի քան 250 մլրդ դոլար)

միջոցներ է տրամադրում մահաբեր զենքի արտադրության ու փորձարկման համար, այլև այն, որ այդ զենքի արտադրությունն ու փորձարկումները բարձրացնում են ռադիոակտիվությունը, խորացնում երկրագնդի բնական միջավայրի ապականումը։

Այսպիսով, ակնհայտ է, որ մեր օրերում հասունացող, իսկ շատ ու շատ գիտնականների կարծիքով արդեն իսկ վրա հասած էկոլոգիական ճգնաժամը կապիտալիզմի զարգացման անխուսափելի հետևանք է և այդ իսկ առումով մարգարեական է հնչում Ֆ. Էնգելսի հարյուր տարի առաջ արտահայտած այն միտքը, թե մարդու և բնության փոխազդեցության «...կարգավորումն իրագործելու համար պահանջվում է ավելին, քան սոսկ իմացությունը։ Դրա համար պահանջվում է լիակատար հեղաշրջում կատարել մինչև այժմ գոյություն ունեցող մեր արտադրաեղանակի մեջ և, դրա հետ միասին, մեր ամբողջ ներկայիս հասարակարգի մեջ» (Բնության դիալեկտիկա, էջ 180)։

Մեր դարաշրջանում արտադրության կապիտալիստական եղանակի այդ ներքին հակասությունը (մի կողմից արտադրության բարձր մակարդակ, մարդկանց կյանքի համար սպառման միջոցների առատության ստեղծումը, իսկ մյուս կողմից՝ մարդկանց շահագործման խորացումն ու նյութական բարիքների աղբյուր հանդիսացող բնական միջավայրի ապականումն ու անօգտագործելի դարձնելը, մարդկության բնաջնջման ահավոր միջոցների ստեղծումը) ավելի ու ավելի է խորանում։ Տակավին առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը ցույց տվեց, որ կապիտալիզմն ի վիճակի չէ լուծելու ո՛չ միայն սոցիալական, այլև մարդ-բնություն փոխազդեցության արմատական պրոբլեմները, ստեղծել է այնպիսի անընդգրկելի ճգնաժամ, որ, ինչպես ժամանակին նշել է Վ. Ի. Լենինը, «...մարդկությունը կանգնել է երկընտրանքի առջև՝ կա՛մ կործանվել, կա՛մ իր բախտը հանձնել ամենահեղափոխական դասակարգին՝ ամենաարագ ու ամենաարմատական ձևով արտադրության ավելի բարձր եղանակին անցնելու համար» (Երկեր, հ. 25, էջ 466)։ Նույն շրջանում գրված մի այլ հոդվածում Վ. Ի. Լենինը ուղղակի նշեց, որ այդ ճգնաժամի պատճառը ոչ թե գիտության ու տեխնիկայի նվաճումներն են, այլ այդ նվաճումներն օգտագործող հասարակական ուժերի բնույթը և որ կապիտալիզմի զարգացման հետևանքով առաջացած հրեշավոր սարսափներից «...փրկվելու միակ միջոցն են հանդիսանում տեխնիկայի այդ նույն ուժերը» (Երկեր, հ. 28, էջ 439)։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՆ իր գոյության առաջին իսկ օրերից ապացուցեց այդ կանխատեսումների ճշմարտացիությունը։ Ամբողջ շրջակա միջավայրը՝ հողը, նրա ընդերքը, անտառները, հռչակելով համաժողովրդական հարստություն, նորաստեղծ սոցիալիստական պետությունը ձեռնամուխ եղավ երկրի բնական ռեսուրսների օգտագործման կարգավորմանը, հրատարակեց բնական միջավայրի պահպանումն ու բարելավումն ապահովող օրենքներ, կազմակերպեց ոչնչացման վտանգի տակ գտնվող կենդանական ու բուսական տեսակների համապետական պաշտպանություն։ Չնայած այն հանգամանքին, որ նոր կարգերը նախկինից ժառանգել էին շատ ու շատ վայրերում գիշատչորեն թալանված ու ապականված միջավայր, և չնայած այն բանին, որ իմպերիալիստների սանձազերծած երկու համաշխարհային պատերազմներն առավել ավերեցին ու ապականեցին հենց Սովետական Միության բնական միջավայրը, ՍՍՀՄ-ը, ինչպես և սոցիալիզմի համակարգի մյուս երկրները՝ մասնավորապես ԳԴՀ-ն, Հունգարիան, Բուլղարիան, ամբողջ աշխարհին այսօր օրինակ են տալիս մարդու և բնության փոխազդեցության պրոբլեմների բանական և հեռանկարային լուծման բնագավառում։ ՍՍՀՄ-ում բնական միջավայրի պահպանման ու բարելավման հարցերը զարգացման սոցիալական ծրագրի օրգանական բաղադրիչն են դարձել։ Մասնավորապես ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում հատուկ ուշադրություն նվիրվեց բնական ռեսուրսների բանական օգտագործման ու բնական միջավայրի պահպանության հարցերին, որոնց հիման վրա ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ և տասներորդ հնգամյա պլաններում միջոցառումների լայն համակարգ է մշակված շրջակա միջավայրի պահպանության, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և դրանց վերարտադրության համար։ ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, բնու-



թագրելով բնության նկատմամբ ՍՄԿԿ և սովետական պետության քաղաքականության էությունը, նշեց. «...բնությունը կարելի է օգտագործել տարբեր կերպ։ Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտի, իր ետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ։ Բայց կարելի է և պետք է, ընկերնե՛ր, վեհացնել բնությունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը։ Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»։ Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում։ Դա մեր սոցիալիստական ուղին է» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 87)։

Մեր երկրում վիթխարի գործ է արված բնության պահպանության և բարելավման բնագավառում, մասնավորապես փրկվել ու բազմացվում են ոչնչացման եզրին կանգնած կենդանական աշխարհի մի շարք տեսակներ (զուբրեր, կուլաններ, իշայծյամներ), կանխվել է Բայկալ լճի ապականումը, կանխվում է Սևանի մակարդակի իջեցումը, դադարեցված է փայտանյութի լաստառաքումը հարյուրավոր գետերում, ամեն տարի ավելի շատ անտառ է տնկվում, քան հատվում է, զգալիորեն մաքրվել է քաղաքների և արդյունաբերական կենտրոնների մթնոլորտը, մեր երկրի մայրաքաղաք Մոսկվան դարձել է աշխարհում ամենամաքուր մթնոլորտ ունեցող մեծ քաղաքը։ Սովետական գիտնականները մշակում և արտադրությանն են հանձնում վնասակար նյութերի արտահոսքը կանխելու, արտադրության ջրերը մաքրելու, թափոնները վնասազերծելու և բանական օգտագործելու նորանոր եղանակներ։

Ահա այս բոլորի շնորհիվ սովետական մարդկանց մեջ արմատավորվում է բնության նկատմամբ միանգամայն նոր, սոցիալիստական վերաբերմունք, նոր հոգեբանություն՝ դիտել բնությունը որպես համաժողովրդական հարստություն, ակտիվ պայքարել բնությունը ապականումից կանխելու համար։ Սակայն մեզ մոտ որոշ տնտեսական ու կազմակերպական թերություններ դեռևս հնարավորություն են ընձեռում առանձին արտադրությունների ղեկավարների ու անհատ մարդկանց՝ շրջանցելու պետական օրենքները, հանուն պլանի կատարման և պարգևատրման, «հավելյալ» եկամուտ ստանալու համար փչացնելու և ավերելու բնական հարստությունները։

Աշխարհում սոցիալական առաջընթացի և գիտատեխնիկական հեղափոխության բուռն զարգացման արդի պայմաններում բնական միջավայրի պահպանության և բարելավման հարցը բարդացել ու դարձել է համաշխարհային քաղաքականության հարց։ Այն անմիջականորեն առնչվում է այնպիսի համաշխարհային պրոբլեմների հետ, ինչպիսիք են էներգիայի արտադրության, բնակչության աճի, տիեզերական հետազոտությունների, սպառազինությունների, մասնավորապես մասսայական բնաջնջման զենքի կրճատման, միջազգային լարվածության թուլացման և կայուն, հաստատուն խաղաղություն հաստատելու պրոբլեմները։ Հակադիր սոցիալական համակարգերի բաժանված արդի աշխարհում իր մայրամուտն ապրող կապիտալիզմը գիտատեխնիկական հեղափոխության մեծագույն նվաճումները ծառայեցնում է այնպիսի նպատակների, որոնք մարդկությանը կարող են պատճառել անուղղելի աղետներ և այն աստիճանի հասցնել մարդու բացասական ազդեցությունը շրջակա միջավայրի վրա, որ այն տանի դեպի մարդկության դեգրադացիա ու կործանում։ Այդ ահավոր ճգնաժամը կարող է կանխվել միայն կայուն խաղաղության հաստատմամբ և հակադիր սոցիալական համակարգերի խաղաղ գոյակցությամբ։ Այդ իսկ առումով միանգամայն ճիշտ է ակադեմիկոս Ե. Ֆյոդորովի այն հայտարարությունը, որ այսօրվա պայմաններում մարդու և բնության փոխազդեցության ճգնաժամի վտանգը միանգամայն ռեալ է և որ ոչ մի ճգնաժամ ընդհանրապես չի լինի, եթե ամբողջ երկրագնդում հաստատվի սոցիալիստական հասարակարգ։ Ճգնաժամը, ըստ երևույթին, անխուսափելի է, եթե կապիտալիստական հասարակարգն իր զարգացման այսօրվա տենդենցներով պահպանվի երկրագնդի

նշանակալի մասի վրա: Ե. Ֆյոդորովը միաժամանակ այն կարծիքն է արտահայտել, որ վերահաս ճգնաժամը կարելի է զգալիորեն թուլացնել, իսկ հնարավոր է նաև կանխել, եթե ապահովվի տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, դադարեցվի սպառազինությունների մրցավազքը և հաստատվի կայուն և երկարատև խաղաղություն (տե՛ս «Вопросы философии», 1973, № 1, էջ 50):

ԼԱՅՆՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼՈՎ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ և միջազգային լարվածության թուլացման ընձեռած հնարավորությունները, Սովետական Միությունն ակտիվ մասնակցում է բնության պահպանության և նրա ռեսուրսների բանական օգտագործման միջազգային կոլեկտիվ միջոցառումներին, ԱՄՆ-ի, Ճապոնիայի, Ֆրանսիայի և ԳՖՀ-ի հետ կնքած երկկողմանի համաձայնագրերում կոնկրետ պարտավորություններ են նախատեսվում բնության պահպանության և բարելավման համար: Վերջին տարիներին ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների բարձրագույն պետական մարմինները մի շարք օրենքներ և ամբողջ կոդեքսներ են հաստատել բնության պահպանության ու բնական ռեսուրսների օգտագործման հետագա բարելավման համար:

Վերջին կես դարում Հայաստանում լեռնահանքային ու քիմիական արդյունաբերության աննախընթաց զարգացումը, բնակչության մեկ երրորդի և արդյունաբերության զգալի մասի կենտրոնացումը մայրաքաղաքում, շինարարության աննախընթաց ծավալը, արտադրության տեղաբաշխման և բնական հարստությունների օգտագործման բնագավառում նախկինում կատարված սխալները, ինչպես և հանրապետության բնական միջավայրի պահպանման նկատմամբ եղած անհոգությունը, անհեռատեսությունն ու հաճախ անպատիժ մնացած արատավոր վերաբերմունքը հանգեցրել են բիոսֆերայի հիմնական բաղադրիչների՝ հողի, մթնոլորտի, հիդրոսֆերայի զգալի ապականման, ընդերքի ոչ խելացի շահագործման, վայրի կենդանական ու բուսական աշխարհի նշանակալի աղքատացման:

Այս երևույթները չեն նսեմացնում այն, հիրավի, վիթխարի աշխատանքը, որ սովետական իշխանության տարիներին կատարված է հանրապետության բնական միջավայրի պահպանման ու բարելավման համար: Ոռոգման ջրանցքների ու ջրամբարների կառուցման շնորհիվ հարյուր հազարավոր հեկտար անապատներ ու աղուտներ վերածվել են բերրի դաշտերի ու այգիների, զգալի աշխատանք է կատարված անտառապատելու լերկ դաշտերը, վերականգնելու հատված անտառները, սահմանափակելու ու վնասազերծելու արդյունաբերական արտանետումներն ու թափոնները: Սակայն սոցիալական զարգացման ներկա փուլը և գիտատեխնիկական հեղափոխության հնարավորությունները ռեալ պայմաններ են ստեղծում ձեռնարկել կոմպլեքս միջոցներ: Արդ ակներև են նախորդ սերունդների և մեր սերնդի վերափոխիչ գործունեության այն կողմերը, որոնք բացասաբար են ազդել բնության վրա, և հնարավոր է դարձել զգալիորեն նվազեցնել բնության ապականումը, հաղթահարել անցյալի հետևանքները:

ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի 1975 թ. հուլիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, նշելով բնության պահպանության և բարելավման բնագավառում հանրապետությունում իրականացվող և նախատեսվող միջոցառումները, շեշտեց, որ «Հարկավոր է վերջ տալ անպատասխանատվությանն ու անփութությանը բնության պահպանության հարցերը լուծելիս: Կուսակցական և սովետական մարմինները պետք է պահանջեն, որ բնության պահպանության պլանները կատարվեն ճիշտ այնպես, ինչպես կատարվում են արտադրության պլանները:

Հարկավոր է բարձրացնել նաև բոլոր տնտեսվարների պատասխանատվությունը ընդերքի պահպանության գործում... Բնության պահպանության համար հարկ է մոբիլիզացնել ամբողջ հասարակայնությունը»:

Ակնհայտ է, որ կուսակցական ու պետական մարմինների ձեռնարկումները պետք է հետևողական կիրառում գտնեն կյանքում, դառնան աշխատավորության հասարակական կազմակերպությունների հարազատ գործը:

Անհրաժեշտ է, որ բնության պահպանության հարցով զբաղվող կազմակերպություններ միավորվեն իրավասությամբ օժտված բնության պահպանու-



թյան պետական կոմիտեի մեջ: Դրանով իսկ զգալիորեն ավելի արդյունավետ և արագ լուծում կստանան մի շարք հարցեր, որոնք այսօր քննարկումներից այն կողմ չեն անցնում: Հնարավորություն կստեղծվի միավորել հանրապետության բնական միջավայրի ապականման իրական վիճակի ու մասշտաբների, ինչպես և դրանց հաղթահարման շուրջ կատարվող հետազոտությունները: Վերջին 2—3 տարում հանրապետության մի շարք գիտական, ուսումնական հաստատություններ, պետական ու հասարակական կազմակերպություններ անց են կացրել հետաքրքիր գիտական քննարկումներ՝ նվիրված բնական միջավայրի պահպանման ու բարելավման պրոբլեմներին:

Արձանագրելով փաստերը, հարկ է առաջ անցնել և այդ հույժ կարևոր գործը մշտապես պահել համապատասխան կազմակերպությունների ուշադրության կենտրոնում:

Անհրաժեշտ խնդիր է բնակչության էկոլոգիական դաստիարակությունը: Մարդ-բնություն փոխազդեցության պրոբլեմը, անշուշտ, ընդհանուր պրոբլեմ է, բայց այն, հատկապես սոցիալիստական հասարակության մեջ, ամեն մի անհատի կենսագործունեության, ապրելակերպի կարևոր տարրերից է: Սոցիալիզմի պայմաններում բնական միջավայրը ժողովրդի, ամեն մի անհատի հարստությունն է: Հասարակության յուրաքանչյուր անդամ պետք է հարազատ լինի բնության նկատմամբ, անհանդուրժող լինի բնությունը ապականողների նկատմամբ: Այս առնչությամբ անհրաժեշտ է գիտական ու գիտա-մասսայական գրականության հրապարակումը: Ուշագրավ է Մարգո Ղուկասյանի «Բաց նամակ երկու միլիոն հասցեով» գիրքը, որտեղ բարձրացված են հասարակական հետաքրքրություն ներկայացնող պրոբլեմներ:

Վերջապես, ըստ երևույթին, արդեն ժամանակն է մյուս միութենական հանրապետությունների օրինակով ձեռնամուխ լինել մեր հանրապետությունում ևս բնության պահպանության ու բարելավման բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստմանը: Քանի որ նման կադրերի պատրաստումը պահանջում է մի շարք գիտությունների՝ կենսաբանության, աշխարհագրության, երկրաբանության, քիմիայի, ֆիզիկայի, մեխանիկայի, հոգեբանության, իրավագիտության, տնտեսագիտության, սոցիոլոգիայի և այլ գիտությունների յուրահատուկ սինթեզ, նպատակահարմար է այդ կադրերի օջախ դարձնել Երևանի պետական համալսարանը, ուր ներկայացված են նշված գիտությունները: Այս հարցի մասին անհրաժեշտ է լրջորեն մտածել:

Մեր երկրի դինամիկ զարգացումը լայն հնարավորություններ է ընձեռում մարդ-բնություն պրոբլեմի գիտական լուծման համար: Մեր քաղաքացիական պարտքն է՝ ձեռնարկել բոլոր միջոցները պահպանելու և շենացնելու հարազատ բնությունը, մարդու գոյատևման օրրանը:

# Արդի բուրժուական սոցիոլոգիայի մեթոդոլոգիական ճգնաժամի շուրջ

**Մ. Ս. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Ի ՆՉՊԵՍ ՀԱՅՏՆԻ Է, արդի բուրժուական սոցիոլոգիական մտքի բնագավառում առավել հանրաճանաչ (և հատկապես մեթոդի վերաբերմամբ «ծայրահեղ») են հասարակագիտության պոզիտիվիստական և անտրոպոցենտրիստական կոնցեպցիաները, որոնք համապատասխանաբար ծնունդ են առել Կոնտի պոզիտիվիզմից և Դիլթեյ-Շելերի կենսափիլիսոփայությունից: Պոզիտիվիստական կոնցեպցիան փորձում է հասարակական երևույթների նկարագրությանը հարմարեցնել այն մեթոդները, որոնք մշակվում են գիտության տրամաբանության ասպեկտով: Գիտականության հասկացությունն այդ ուղղությունը նույնացնում է բնագիտական, հիմնականում քանակական մեթոդների ու մոտեցումների կիրառման հետ: Հենց այդ հիման վրա էլ ընդհանուր սոցիոլոգիական տեսության համար պոզիտիվիզմի առաջարկած մեթոդը հաճախ անվանում են «սցիենտիկական» (անգլերեն „Science“-«գիտություն» բառից):

Ի տարբերություն պոզիտիվիզմի, անտրոպոցենտրիզմը մի ուղղություն է, որը ելնում է մարդու և «մարդկայինի» հատուկ արժույթայնությունից, ոչ մի գիտական մեթոդ չի ընդունում և ընդհանրապես հրաժարվում է «տեսություն» լինելուց: Այսպես, օրինակ, էկզիստենցիալիզմը, որպես անտրոպոցենտրիզմի տարատեսակ, մեթոդոլոգիական առումով ավելի շուտ դրույթ է, «որը միայն մոտավորապես է սխեմայի վերածվում կատեգորիաների հատուկ հավաքածուի օգնությամբ» (Э. Ю. Соловьев. Экзистенциализм и научное познание. М., 1966, стр: 5—6): Այդ իմաստով անտրոպոցենտրիստական կոնցեպցիան ավելի ճիշտ կլիներ բնութագրել որպես ռելյատիվիստական և իռացիոնալիստական, քանի որ նրան հատուկ մոտեցումը հանգեցնում է հասարակության օբյեկտիվորեն պայմանավորված դիալեկտիկական օրինաչափությունների ժխտմանը: Այս ուղղությունը, ինչպես հայտնի է, համամիտ է «արժույթային» մոտեցմանը, որը, նրա կողմնակիցների կարծիքով, սկզբունքորեն տարբեր է «սցիենտիկական» մոտեցումից:

Արդի բուրժուական փիլիսոփայության այս երկու հիմնական տենդենցների ազդեցությունը հասարակագիտության վրա բնորոշում է հասարակագիտական մեթոդոլոգիայի ներկա ճգնաժամի երկակի բնույթն Արևմուտքում: Այդ իսկ նկատառումով մեթոդոլոգիայի ճգնաժամի հարցը պետք է քննարկել տարբեր կերպ՝ նայած խոսքը վերաբերում է սցիենտիկական, թե՞ իռացիոնալիստական ուղղությանը: Մի դեպքում նկատի են առնվում անտրոպոցենտրիստական կոնցեպցիաներում եղած ճգնաժամային երևույթները, որոնք վերջին ժամանակներս յուրահատուկ և վերին աստիճանի խճճված տեսք ունեն: Հավանորեն, կարելի է պնդել, որ դրանց էվոլյուցիան չափազանց հակասական է: Մի կողմից



այդ ուղղությանը օրգանապես հատուկ է իռացիոնալիստական նկրտումը: Այդ պատճառով էլ անտրոպոցենտրիզմի մեթոդոլոգիական ճգնաժամի մասին կարելի է խոսել միայն ընդհանուր իմացաբանական, այսինքն՝ այն առումով, որ այդ ուղղությունը չի ընդունում գիտական, ավելի ճիշտ՝ տեսական մեթոդոլոգիան, երբ ճշմարտության չափանիշների պրոբլեմն ընդհանրապես փոխադրվում է «ոչ-բանական», իռացիոնալ պլանի վրա:

Բայց միաժամանակ հակագիտական մոտեցումների վարկաբեկումն ողջ անտրոպոցենտրիզմին պարտադրում է իր հիմնադրույթներին տալ եթե ոչ գիտական, ապա գոնե գիտականակերպ, համակարգված տեսք: Ժ. Պ. Սարտրն առաջիններից մեկն էր, որն ընթացավ այդ ուղիով, և որի Դիալեկտիկական բանականության քննադատություն գիրքն առանձնապես հատկանշական է այդ տեսակետից: Մի խոսքով, Սարտրն ամեն կերպ հրաժարվում է իռացիոնալիզմից. նա պայքարում է այն բանի համար, որ «պատահմունքի դերը հասցվի նվազագույնի» և «անորոշության ու անտեղյակության բաժինը» ծայր աստիճան կրճատվի (տե՛ս J.-P. Sartre. Critique de la reson dialectique. Paris, 1960., p. 62): Բայց դրա համար փիլիսոփայելու օբյեկտ է դառնում հենց պատահմունքը՝ եղակի («կոնկրետ», «ռեալ») «Մարդը» առանց որևէ «Ուրիշի»: Այդ «մարդը», որ կտրված է իր էությունը օրինաչափորեն պայմանավորող ու որոշող հասարակական բոլոր կապերից, լիովին թողնված է իր բախտին և դրանով իսկ զրկված ինքնաճանաչման բոլոր շատ թե քիչ օբյեկտիվ եղանակներից: Մարդը պետք է ճաշակի «զուտ» իրեն, իրեն՝ որպես այդպիսին: Ակներև է, որ այդ դեպքում մերժվում են ճշմարտության ամեն տեսակ օբյեկտիվ չափանիշները (մարդու «նախագիծը» նույնպես գտնվում է հենց իր մեջ), որոնք անհրաժեշտ են, որպեսզի «իմացությունը» տեսական լինի: Պրակտիկա-գործունեությունը, որը պահանջվածից ավելի հաճախ է վկայակոչում Սարտրը, նույնպես դուրս չի գալիս մեկուսացած ինքնաճանաչողության շրջանակներից: Դիալեկտիկական բանականության «գաղտնիքը», որը երկար տարիներ սպառնում էր բացահայտել Սարտրը, մնում է փակված հենց իր՝ բանականության մեջ և այնպես ամուր, ինչպես երբեք: Դրանով իսկ հիմնավորվում է մարդու և հասարակության բանական տեսական իմացության անհնարինությունը: Եվ մարտի դաշտը մնում է պսիխոլոգիզմին ու իռացիոնալիզմին, քանի որ «իմացության» այլ ուղի կարծես թե չի մնում:

Այս հակասականությունը, որը հատուկ է, իհարկե, ոչ միայն Սարտրին (նրա էկզիստենցիալիզմը, ինչպես հայտնի է, անտրոպոցենտրիզմի «բանական» տարբերակներից մեկն է), վկայում է բուն անտրոպոցենտրիստական մոտեցման ճգնաժամի մասին: Այն, որ անտրոպոցենտրիզմը հակվում է Բերգսոնին, Ֆրոյդին և հատկապես Նիցշեին, հավանորեն, շատ չպետք է զարմացնի: Բայց դրա հետ միասին չէ՞ որ այդ ուղղությունն ամբողջությամբ վերցրած փորձում է խաղալ իրենց բնույթով այնպիսի ընդհանուր-գիտական և գիտափիլիսոփայական հասկացությունների հետ, ինչպիսիք են դիալեկտիկական բանականությունը, սիստեմը և հատկապես կառուցվածքը, դրանք առաջարկելով իբրև յուրօրինակ, ըստ էության, ինտուիտիվիստական հավաքածու: Արևմուտքում (թե՛ Եվրոպայում և թե՛ Ամերիկայում) էկզիստենցիալիստական բնույթի առավել մոդայական սոցիալ-քաղաքական հոսանքները (և ամենից առաջ ֆրանկֆուրտյան դպրոցի սոցիալական փիլիսոփայությունը) այդ իմաստով չեն խորշում ուղածդ շիլափլավից. նրանց փաստարկումներին «հավասարապես» մասնակցում են թե՛ Հեգելն ու Կանտը, թե՛ Ֆրոյդն ու Հայդեգերը, թե՛ Նիցշեն ու Ռիլկեն, թե՛ Բոդլերն ու Պոլ Վալերին: Նրանցից ոմանք (առանձնապես Հ. Մարկուզեն իր «Միաչափ մարդը» երկում) «երրորդ ուղին» հաստատելու համար դիմում են նույնիսկ այն կոնկրետ-էմպիրիկ սոցիալական հետազոտություններին, որոնք մի ժամանակ անտրոպոցենտրիզմը կտրուկ մերժում էր:

Բայց, թերևս, ամենից ավելի արդի անտրոպոցենտրիստական տենդենցի (և ոչ միայն դրա) ճգնաժամի մասին վկայում է այն, որ նրա կողմնակիցները դիմում են Կարլ Մարքսին:

Դա, իհարկե, բնավ չպետք է ընդունել որպես հաճոյախոսություն Մարքսի

լիստական ըմբռնման) նկատմամբ, իսկ տեսությունը կապակցել սոցիոլոգիայի որևէ այլ մեթոդի (ասենք, ֆենոմենոլոգիական կամ տրամաբանական-էմպիրիստական ռեդուկցիայի մեթոդի) հետ։

Սակայն թե՛ պոզիտիվիստները, թե՛ անտրոպոցենտրիստները, ղեկավարվելով ըստ էության հենց նույն մոտեցման ծայրահեղ տարբերակներով, վերջին հաշվով, գաղափարապես հակադրվելով մարքս-լենինյան աշխարհայացքին, չեն կարող և չեն ուզում հասկանալ այդ։ Մարքս-լենինյան ընդհանուր սոցիոլոգիական տեսությունը բացահայտորեն անընդունելի է ինչպես կապիտալիզմի բացահայտ պաշտպանների, այնպես էլ, այսպես կոչված, երրորդ ուղու քարոզիչների համար. թե՛ առաջիններին, թե՛ երկրորդներին Մարքսի և Լենինի փիլիսոփայական մատերիալիզմը ձեռնտու չէ, երբ հարցը վերաբերում է հասարակական զարգացման կոնցեպցիային և այն սոցիալ-քաղաքական հետևություններին, որ բխում են դրանից։ Ուստի, նեոկանտական և մախիստական տրադիցիային համապատասխան, նրանք, յուրաքանչյուրը յուրովի, շտկում են մեթոդը, զտելով այն փիլիսոփայական մատերիալիզմից՝ պատմության մատերիալիստական ըմբռնումից։

Ելք որոնելով մեթոդոլոգիական ճգնաժամից, ակադեմիական սոցիոլոգիան մեծ հույսեր է դնում մարքս-լենինյան դիալեկտիկական մեթոդի և կառուցվածքային-ֆունկցիոնալիզմի «կոնվերգենցիայի» վրա։ Արևմտյան սոցիոլոգիայի վերահաս ճգնաժամը գրքի հեղինակ Ա. Գոուլդների կարծիքով, այդպիսի մերձեցումը կոնստրուկտիվ (և անխուսափելի) է ինչպես կառուցվածքային-ֆունկցիոնալիզմի, այնպես էլ մարքս-լենինյան ընդհանուր սոցիոլոգիական տեսության համար, և այդ մերձեցումը կնպաստի այն բանին, որպեսզի «համաշխարհային սոցիոլոգիան, վերջապես, հաղթահարի այն «հերձվածը», որի մեջ գոյատևել է ավելի քան մեկ դար (տե՛ս Goul'ner A. W. The Coming crisis of Western Sociology, p. 449);

Կոպտաբար զոհելով տեսականի ու էմպիրիկականի հարցն ընդհանուր սոցիոլոգիական գիտության մեջ, նա այդ «տենդենցը» տեսնում է այն փաստում, որ Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում վերջին տասնամյակներում հատուկ ուշադրություն է հատկացվում կոնկրետ սոցիոլոգիական հետազոտություններին։ Ընդսմին, նա, բնականաբար, հաշվի չի առնում այն կարևորագույն հանգամանքը, որ սոցիալական հետազոտությունները, որոնք առանձնապես անհրաժեշտ են արդի գիտա-տեխնիկական հեղափոխության դարաշրջանում, կարող են կատարվել ընդհանուր սոցիոլոգիական տարբեր կոնցեպցիաների հիման վրա։

Կոնկրետ-սոցիոլոգիական հետազոտություններն իրոք լայն չափով զարգացել են սոցիալիզմի երկրներում, բայց դրանք կարիք չեն զգում մի այնպիսի խախուտ և իրեն վերջնականապես վարկաբեկած մեթոդի, ինչպիսին է կառուցվածքային-ֆունկցիոնալ վերլուծության մեթոդը (տեսությունը)։ Իհարկե, այդ հետազոտություններն ունեն իրենց մեթոդիկան ու տեխնիկան, պրոբլեմներն ու հեռանկարները, բայց դրա հետ միասին չեն կարող կախված մնալ օդում, տեսական առումով լինել «իրենք իրենց համար»։ Այդպիսի տեսական, մեթոդոլոգիական և ըմբռնումային հիմք է հանդիսանում պատմական մատերիալիզմը, որը տվյալ կապակցությամբ հանդես է գալիս որպես ընդհանուր սոցիոլոգիական տեսություն և սոցիալ-փիլիսոփայական գիտություն։ Պատմության մատերիալիստական ըմբռնումը, որն իր բուն հիմքում ենթադրում է «արժույթի» և «գիտելիքի» դիալեկտիկական միասնություն, ուղղություն է տալիս կոնկրետ-սոցիոլոգիական հետազոտություններին, սահմանում է այդ հետազոտությունների բնույթը և տեսականորեն ապահովում դրանց առավելագույն արդյունավետությունը՝ զարգացած սոցիալիզմի կառուցման այս կամ այն սոցիալական պրոբլեմը լուծելիս։

Հասարակական կյանքն այնքան բարդ, բազմազան ու դիալեկտիկական է, որ չի կարելի այն խցկել ձևական-տրամաբանական մեթոդոլոգիայի անձուկ շրջանակների մեջ։ Կառուցվածքային-ֆունկցիոնալ վերլուծության մեթոդի ստատիկությունն ու «ճշգրտությունը» քննություն չեն բռնում կյանքի դիալեկտիկայի, հասարակական զարգացման դիալեկտիկայի հետ բախվելիս։

# ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆ ԻՆԺԵՆԵՐԻԱ

**Լ. Ս. ՄԱՐԿՈՍՅԱՆ**

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ, ուսումնասիրելով կենդանի օրգանիզմների աճն ու զարգացումը, առանձին բջիջներում տեղի ունեցած կենսաքիմիական ռեակցիաներից սկսած մինչև ամբողջական օրգանիզմում ընթացող կենսական երևույթները, հնարավորություն է ընձեռում ավելի ակտիվ միջամտելու, նպատակասլաց ղեկավարելու կենդանի օրգանիզմներում տեղի ունեցող պրոցեսները։ Կենսաբանության նվաճումներով է պայմանավորված նաև գյուղատնտեսության, բժշկության, տիեզերքի նվաճման, սննդարդյունաբերության և մի շարք այլ բնագավառների հետագա զարգացումը։ Կենսաբանությունը, շնորհիվ իր խոշոր նվաճումների, այժմ իրավամբ համարվում է համար առաջին գիտությունը։ Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ այս հնգամյակում գիտական հետազոտությունների զարգացման կարևորագույն ուղղությունների շարքին պետք է դասվեն նաև կենսաբանության շատ բնագավառներ, ինչպես նաև մոլեկուլյար կենսաբանությունը։

Կենդանի օրգանիզմները, սկսած մանրէներից մինչև մարդը, չափազանց բարդ կառուցվածքի, համագործակցված սիստեմներ են՝ բաղկացած բազմաթիվ ու բազմապիսի օրգանական ու անօրգանական միացություններից. դրանք օժտված են միայն իրենց բնորոշ յուրահատկություններով, որոնցով օժտված չէ ոչ մի անկենդան նյութ և ոչ էլ դրա որևէ խառնուրդ։ Կենդանի նյութը մատերիայի մի նոր որակական գոյաձև է, որն ունի զարգացման իր օրինաչափությունները։

Մեր մոլորակը բնակեցված է խիստ բազմազան կենդանի էակներով։ Այսպես, օրինակ, բուսական աշխարհում հաշվվում է մոտ 500.000 տեսակ, իսկ կենդանականում՝ մեկ ու կես միլիոն։ Եթե այս բոլորին գումարենք մանրէները, ապա պարզ կլինի, թե որքան բազմազան է կենդանի բնությունը։ Սակայն բոլոր կենդանի էակներին բնորոշ են մի շարք ընդհանուր առանձնահատկություններ։ Կենդանի օրգանիզմի յուրաքանչյուր բաղկացուցիչ մաս՝ բջիջ կամ ենթաբջջային կառուցվածք, կատարում է որոշակի ֆունկցիաներ։ Այդպես են և դրանց բաղադրության մեջ մտնող առանձին քիմիական միացությունները՝ սպիտակուցները, ածխաջրերը, նուկլեինաթթուները, ճարպերը և այլն, որոնք տարբեր ռեակցիաների ընթացքում փոխակերպվելով և որոշակիորեն փոխազդելով միմյանց վրա, հանդիսանում են կենդանի բջիջներում ընթացող խիստ համագործակցված այն բոլոր կենսապրոցեսների հիմքը, կամ՝ «մոլեկուլյար տրամաբանությունը», որը, ի վերջո, պայմանավորում է մատերիայի մի նոր գոյաձևի՝ կենդանի նյութի, կենդանի էակների գոյությունը։ Կենդանի էակներին ամենաբնորոշ հատկություններից մեկը՝ ինքնավերարտադրման (բազմացման) ունակությունը, նույնպես պայմանավորված է վերը նշված կենդանի նյութի մոլեկուլյար տրամաբանությամբ։ Այս առումով, ինչպես միաբջիջ, նույնպես և բազմաբջիջ օրգանիզմների նորմալ կենսագործունեության պրոցեսներում առանցքային նշանակություն ունեն սպիտակուցներն ու նուկլեի-

նաթթուները: Միաժամանակ նշենք, որ յուրաքանչյուր օրգանիզմի բնորոշ է նաև իրեն հատուկ սպիտակուցների և այլ միացությունների որակական կազմ: Ընդ որում, յուրաքանչյուր մոլեկուլ կատարում է իր ուրույն դերը տվյալ օրգանիզմի կենսական պրոցեսներում: Ուստի, պարզ է, որ կենդանի օրգանիզմները հանդիսանում են չափազանց բարդ ու կատարելագործված մոլեկուլյար սիստեմներ:

Վերջին մեկ-երկու տասնամյակներում կենսաբանական գիտությունները, մասնավորապես կենսաքիմիան, գենետիկան, մոլեկուլյար կենսաբանությունը, ակնբախ նվաճումների հասան բջիջներում ընթացող կենսապրոցեսների, ինչպես նաև առանձին միացությունների կառուցվածքի ու հատկությունների ուսումնասիրման ասպարեզում, այդպիսով նախադրյալներ ստեղծվեցին մի նոր ուղղության առաջացման համար, որն ստացել է կենսաբանական ինժեներիա անվանումը և որի հիմնական նպատակն է ո՛չ միայն կառավարել բջիջներում ընթացող առանձին պրոցեսներ, այլև ստեղծել նոր հատկություններով օժտված օրգանիզմներ:

Այդ ուղղության զարգացման գործում առանձնակի տեղ է գրավում երկու խումբ միացությունների՝ նուկլեինաթթուների և սպիտակուցների կառուցվածքի ու կենսասինթեզի պրոցեսների պարզաբանումը, քանի որ վերջիններս կենդանի բջիջների կենսագործունեության այն առանցքային պրոցեսներն են, որոնք վկայում են տվյալ բջջի կամ օրգանիզմի գոյությունը՝ իրենց յուրահատուկ հատկանիշներով:

Նշենք, որ ինչպես նուկլեինաթթուները, նույնպես և սպիտակուցները, հանդիսանում են կենսաբանական բարդ պոլիմերներ: Դեզօքսիռիբոնուկլեինաթթուն (ԴՆԹ) և ռիբոնուկլեինաթթուն (ՌՆԹ) բաղկացած են չորս տիպի նուկլեոտիդներից, իսկ սպիտակուցները՝ մոտ քսան տարբեր ամինաթթուներից: Վերջիններիս քանակն ու հաջորդականությունը պայմանավորում են տվյալ մոլեկուլի կառուցվածքային և ֆունկցիոնալ առանձնահատկությունները: Այժմ քաջ հայտնի է, որ ԴՆԹ-ն մտնում է քրոմոսոմների բաղադրության մեջ և պայմանավորում տվյալ օրգանիզմի ժառանգական բոլոր հատկանիշները:

Միաժամանակ հայտնի է, որ օրգանիզմների առանձնահատկությունները պայմանավորվում են դրանցում ընթացող նյութափոխանակության պրոցեսներով: Ապացուցված է նաև, որ յուրաքանչյուր կենսաքիմիական ռեակցիա ունի իր յուրահատուկ բիոլոգիական կատալիզատորը՝ ֆերմենտը: Բոլոր ֆերմենտները պարզ կամ բարդ սպիտակուցներ են: Ուստի, նյութափոխանակության պրոցեսների ընթացքը, ինչպես նաև որևէ հատկանիշի երևան գալը պայմանավորված է համապատասխան սպիտակուցի սինթեզով: Այդ իսկ պատճառով սպիտակուցի սինթեզի պարզաբանումը խոշորագույն նվաճում է համարվում:

Մանրակրկիտ ուսումնասիրությունները պարզել են, որ սպիտակուցի կենսասինթեզը բջիջներում ընթանում է հետևյալ ընդհանուր սխեմայով. բջջակորիզում գտնվող ժառանգակիր նյութի (ԴՆԹ) մեկ առանձին հատվածի (գենի) վրա սինթեզվում է մի նյութ (ինֆորմացիոն ռիբոնուկլեինաթթու), որն արտատպում է գենի կառուցվածքային առանձնահատկությունները և հետագայում, մտնելով ենթաբջջային մանրագույն մասնիկներին (ռիբոսոմներին), ուր տեղի է ունենում սպիտակուցի սինթեզը, պայմանավորում է որոշակի կառուցվածք ու հատկություններ ունեցող սպիտակուցի սինթեզը: Այսինքն՝ սպիտակուցի սինթեզը տեղի է ունենում ԴՆԹ(գեն) → ինֆորմացիոն ՌՆԹ → սպիտակուց ընդհանուր սխեմայով. սինթեզված սպիտակուցի ինչպես կառուցվածքային, այնպես էլ բիոլոգիական առանձնահատկություններն ի վերջո պայմանավորված են ժառանգակիր նյութի (գենի) կառուցվածքային առանձնահատկություններով, որը ծառայել է որպես մատրիցա ինֆորմացիոն ՌՆԹ-ի սինթեզի համար: Ավելի մանրամասն չքննարկելով սպիտակուցի կենսասինթեզը (այդ հարցի վերաբերյալ ամսագրում տպագրվել է առանձին հոդված), նշենք, որ վերջին տարիների ուսումնասիրությունները պարզեցին, որ դրա՝ վերը նշված ուղին միակը չէ:

1970 թ. Գ. Տյոմինն առաջին անգամ հայտնաբերեց, որ սարկոմա առաջացնող վիրուսը պարունակում է մի ֆերմենտ, որն ունակ է սինթեզելու ժառանգակիր նյութի (ԴՆԹ) մոլեկուլ՝ որպես մատրիցա օգտագործելով տվյալ վիրուսի ռիբոնուկլեինաթթուն (տվյալ դեպքում ժառանգակիր նյութը): Հետագայում նման տվյալներ ստացան նաև այլ գիտնականներ: Այսպիսով, պարզվեց, որ, ի տարբերություն սպիտակուցի, սինթեզի վերը նշված ուղուց հնարավոր է, որ նախօրոք սինթեզվի ժառանգակիր նյութի մի ինչ-որ հատված, որը նոր միայն կպայմանավորի մի նոր սպիտակուցի մոլեկուլի սինթեզը: Այսինքն՝ սպիտակուցի կենսասինթեզի՝ ճանաչում գտած ընդհանուր ֆորմուլայում կարելի է էական լրացում կատարել. ՌՆԹ (օրինակ վիրուս) → ԴՆԹ → Ի-ՌՆԹ → սպիտակուց: Նման ֆերմենտ հետագայում հայտնաբերվեց ո՛չ միայն ուրիշ վիրուսներում, այլև նորմալ բջիջներում և անվանվեց ռևերտազա: Այդ ֆերմենտի հայտնագործումը լույս սփռեց վիրուսների փոխազդման մեխանիզմի վրա: Այս հայտնագործությունը նոր հնարավորություններ բացեց գենի սինթեզի բնագավառում: Ռևերտազայի հայտնագործումը կենսաքիմիայի, մոլեկուլյար կենսաբանության վերջին տարիների խոշոր նվաճումներից է: 1972 թ. ՍՍՀՄ-ում ստեղծվել է ռևերտազա կոչվող գիտահետազոտական աշխատանքների մի նախագիծ, որի իրագործմանը մասնակցում են գիտահետազոտական շատ կոլեկտիվներ, առանձին գիտնականներ, որոնց թվում են նաև դեմոկրատական մի շարք երկրների հայտնի մասնագետներ: Այսպիսով, յուրաքանչյուր հատկանիշի երևան գալը պայմանավորված է, նախ՝ որոշակի գենի առկայությամբ, այնուհետև համապատասխան սպիտակուցի սինթեզով (մեկ գեն—մեկ հատկանիշ): Ուստի, կենսաբանական ինժեներիան՝ գիտության այս նորագույն ուղղությունը, որի հիմնական նպատակն է նպատակասլաց ղեկավարել, փոփոխել օրգանիզմի այս կամ այն հատկանիշը, կամ ստեղծել նոր օրգանիզմներ, իր գործունեության ոլորտում անպայման առնչվում է գենետիկական ապարատի գործունեության և կենսաքիմիական պրոցեսների հետ: Կամ, այլ կերպ ասած, եթե կարելի լինի ստանալ ցանկացած հատկություններով օժտված սպիտակուցի սինթեզը պայմանավորող գեն և ներմուծել այն բջիջ, ապա մարդկությունը կունենա այնպիսի մի հզոր միջոց, որի նշանակությունը դժվար է գերագնահատել: Այսպես, օրինակ, հայտնի է, որ ժառանգական կամ մոլեկուլյար շատ հիվանդություններ (որոնց թիվը հազարից անցնում է) հետևանք են որևէ որոշակի գենի ոչ նորմալ կառուցվածքի, այլ կերպ ասած՝ «արատավոր գենի», որն իր հերթին, պայմանավորում է բջիջներում սպիտակուցի փոփոխված այնպիսի մոլեկուլի սինթեզը, որն այլևս ի վիճակի չէ կատարելու նորմալ վիճակին հատուկ կատալիտիկ ֆունկցիան: Ուստի, եթե հաջողվեր ստանալ համապատասխան նորմալ գեն և ներմուծել վերջինս բջիջ, ապա կարելի կլիներ բուժել ժառանգական շատ հիվանդություններ: Սակայն, որպեսզի նման «մոլեկուլյար թերապիան» հնարավոր լինի, առաջին հերթին անհրաժեշտ է ունենալ անջատված մաքուր վիճակում համապատասխան «առողջ» գեներ: Հարկ է նշել, որ որոշակի գենի ստացումը ժամանակակից կենսաբանության ամենախրթին հարցերից է, և այդ ուղղությամբ նկատելի հաջողություններ ձեռք են բերվել միայն վերջին մի քանի տարիներին:

Սկզբունքորեն կարող է գոյություն ունենալ գենի ստացման երկու հիմնական ճանապարհ: Առաջինը՝ նրան օրգանիզմից անջատելու հնարավորությունն է, երկրորդը՝ արհեստական սինթեզը: Առաջին անգամ օրգանիզմից գեն անջատել հաջողվել է ամերիկյան մի խումբ գիտնականների, 1969 թ.: Աղիքային ցուպիկ կոչվող բակտերիայի ժառանգակիր նյութից նրանք անջատել են կաթնաշաքարի յուրացմանը նպաստող լակտազա ֆերմենտի սինթեզը պայմանավորող գենը, որը կոչվում է լակ-օպերոն: Այդ նպատակի համար աղիքային ցուպիկը վարակվում է բակտերիոֆագով (լյամբդա խմբին պատկանող), որի ժառանգակիր նյութը (ԴՆԹ-ն) միանում է բակտերիայի ժառանգակիր նյութին և, մշակման որոշակի պայմաններում, դարձյալ անջատվում է, այս անգամ իր հետ տանելով աղիքային ցուպիկի քրոմոսոմի լակ-օպերոն հատվածը: Այս ուսումնասիրություններն ուղեցույց հանդիսացան այլ գեների անջատման:

Գենի ստացման երկրորդ եղանակը դրա քիմիական սինթեզն է, որով զբաղվել են ամերիկյան գիտնականները՝ Նոբելյան մրցանակի դափնեկիր Կորանի ղեկավարությամբ: Նրանք սինթեզել են խմորասնկերի ալանինը փոխադրող Փ—ՌՆԹ-ի կենսասինթեզը պայմանավորող գենը: Նշված գենի ընտրությունը պատահական չէր. հայտնի էր նրա կառուցվածքի մեջ մտնող նուկլեոտիդների հաջորդականությունը, որն առաջին նախապայմանն է համապատասխան գենի, այսինքն՝ ԴՆԹ-ի տվյալ հատվածի սինթեզի համար: Գիտնականները պետք է միմյանց միացնեին 77 զույգ նուկլեոտիդներ՝ որոշակի հաջորդականությամբ, հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, օրգանական քիմիայի զինանոցի սինթեզի եղանակների հետ մեկտեղ օգտագործելով նաև կենսաքիմիայի բնագավառի միջոցները: Հնգամյա ուսումնասիրությունները 1970 թ. ավարտվեցին հաջողությամբ: Այսպիսով, բջջից դուրս, փորձանոթում, առաջին անգամ սինթեզվեց գենը:

Սկզբունքային մեծ հաջողություն էր այս և, ի տարբերություն գենը կենդանի բջջից անջատելու վերը նշված եղանակի, այս դեպքում հնարավոր է փոփոխել նրա կառուցվածքը, այսինքն՝ փոփոխել նրա առանձնահատկությունները: Նախ՝ պետք է նախապես իմանալ սինթեզվող գենի կառուցվածքը, երկրորդ՝ միշտ չէ, որ նման եղանակով սինթեզված գենը կարող է, ինչպես ասում են՝ գործել: Այդ իսկ պատճառով, չնայած գենի քիմիական սինթեզի սկզբունքային կարևորությանը, այն, այնուամենայնիվ, հեռանկարային չէ: Ուստի, գիտնականները միաժամանակ ուսումնասիրում էին կենսասինթեզի եղանակով գենի ստացման հնարավորությունները: Այժմ մշակված է գենի սինթեզի այնպիսի եղանակ, որն իրագործվում է ռևերտազա ֆերմենտի մասնակցությամբ:

Մինչև այժմ նման եղանակով սինթեզվել են մարդու, ճագարի, աղավնու, սագերի գլոբինի (որը մտնում է օրգանիզմին թթվածին մատակարարող սպիտակուցի կազմի մեջ), ինչպես նաև իմունոգլոբինի և աչքի ոսպնյակի սպիտակուցի սինթեզը պայմանավորող համապատասխան գեներ: Հաջորդ կարևորագույն խնդիրն էր տվյալ գենը ներմուծել բջիջ, այսինքն՝ կառավարել օրգանիզմի այս կամ այն ժառանգական հատկանիշը, որը և կենսաբանական ինժեներիայի առանցքային հարցն է: Եթե նման միտքը ոչ հեռու անցյալում կարող էր համարվել գիտական ֆանտազիա, մոլեկուլյար կենսաբանության մշակած եղանակներն արդեն հնարավորություն են ընձեռում գենը ներմուծելու բջիջ: Այսպես, օրինակ, այժմ հնարավոր է գենը մեկ օրգանիզմից տեղափոխել մեկ այլ օրգանիզմ: Պարզվել է, որ բակտերիոֆագը, ներթափանցելով բակտերիայի բջիջ, միանում է վերջինիս ժառանգակիր նյութին և բազմանում: Հետագայում, ներթափանցելով մեկ այլ բջիջ, այն կարող է իր հետ տանել նախորդ բջջի ժառանգակիր նյութի որոշակի հատված (գեներ), հաղորդելով վերջինիս նոր հատկանիշներ: Այսպես, գալակտոզեմիա ծանր հիվանդության ժամանակ մարդը չի կարողանում յուրացնել գալակտոզա շաքարը, որը կաթնաշաքարի և այլ սննդամթերքների բաղադրամասն է: Այդ հետևանք է այն բանի, որ ժառանգական ապարատում վնասված է լինում նշված շաքարի յուրացմանը նպաստող համապատասխան ֆերմենտի սինթեզը պայմանավորող գենը: Միաժամանակ հայտնի է, որ աղիքային ցուպիկի որոշ շտամներ ունակ են յուրացնելու նշված շաքարը: 1971 թ. մի խումբ գիտնականների հաջողվեց աղիքային ցուպիկը բակտերիոֆագով վարակել, բազմացնել և ապա տեղափոխել դրանք հիվանդ օրգանիզմի շարակցական հյուսվածքի բջիջների մեջ, որոնք լավ աճում են այդտեղ և ձեռք են բերում գալակտոզա շաքարը յուրացնելու ունակություն: Նման ճանապարհով հաջողվել է պալարաբակտերիաներից մթնոլորտային ազոտը կլանելու ունակությունը պայմանավորող գենը տեղափոխել մի այլ միկրոօրգանիզմ, որը մինչ այդ օժտված չէր տվյալ հատկությամբ: Այս կարևորագույն հարցով զբաղվում են աշխարհի, ինչպես նաև Սովետական Միության շատ գիտնականներ: Այսպես, օրինակ, ուկրաինացի գիտնականներին հաջողվել է ազոտ ֆիքսող պալարաբակտերիայի ամբողջ բջիջը ներդնել ցորենի տերևի բջիջներում: Հայտնաբերվել է, որ այս վիճակում ևս պալարա-



բակտերիաները շարունակում են ազոտ կլանել: Նշված ուսումնասիրությունները շարունակվում են և, եթե հետագայում պրոցեսներն այնպես ընթանան, որ բակտերիալ բջիջը քայքայվի, իսկ նրա ազոտ կլանելու հատկանիշը պայմանավորող գենը միանա ցորենի ժառանգական ապարատին, ապա, հավանաբար, ցորենը ձեռք կբերի ազոտ կլանելու նոր հատկանիշ, որը կժառանգի սերունդներին: Այդպիսով կվերանա ազոտային լրացուցիչ սնուցման անհրաժեշտությունը, և կզատվեն այն հսկայական միջոցները, որոնք ծախսվում են ամեն տարի ազոտական պարարտանյութերի արտադրության վրա: Ուսումնասիրություններն այս ուղղությամբ շարունակվում են:

Օգտագործելով ժառանգակիր նյութը բջիջներ ներմուծելու սկզբունքը՝ սովետական գիտնականներին հաջողվել է եգիպտացորենի մեկ սորտից (որն աչքի է ընկնում հատիկների քաղցրությամբ և քանակով) անջատել ժառանգակիր նյութը (ԴՆԹ) և ներմուծել մի այլ սորտի եգիպտացորենի բջիջների մեջ: Պարզվել է, որ հաջորդ սերունդներն օժտված են ներմուծված հատկանիշներով: Այս փորձերը մեկ անգամ ևս ապացուցեցին, որ կենսաբանական ինժեներիայի եղանակներն զգալիորեն արագացնում և հեշտացնում են սելեկցիոն աշխատանքները:

Գոյություն ունի օրգանիզմները նոր հատկանիշ ներմուծելու մի այլ եղանակ ևս, որը կոչվում է մոլեկուլյար «հիբրիդիզացիա»: Հայտնի է, որ բակտերիաների բջիջներում կա մի քրոմոսոմ, որը, ի տարբերություն մյուսների, օղակաձև է: Այն պայմանավորում է, օրինակ, բակտերիաների կայունությունն այս կամ այն անտիբիոտիկի նկատմամբ: Այժմ գիտնականները կարողանում են այդ օղակաձև քրոմոսոմը՝ պլազմիդան, անջատել տարբեր բակտերիալ բջիջներից, բաժանել դրանք առանձին հատվածների և ապա կրկին ստանալ մի նոր պլազմիդա, որի առանձին հատվածներ վերցված են տարբեր բակտերիաներից: Գիտնականներ Ս. Կոէնին և Է. Ջանգային հաջողվել է աղիքային ցուպիկից (որը կայուն է տետրացիկլինի, բայց ոչ պենիցիլինի նկատմամբ) և ստաֆիլակոկից (որը ցուցաբերում է հակառակ ունակություններ նշված անտիբիոտիկների նկատմամբ) անջատել պլազմիդան (օղակաձև կառուցվածք ունեցող ԴՆՏ-ն), մշակել վերը նկարագրված եղանակով և, ապա այդ ԴՆԹ-ի նոր հիբրիդային մոլեկուլներով վարակել բակտերիաներին, ստանալ այնպիսի նոր շտամներ, որոնք արդեն կայուն են նշված երկու անտիբիոտիկի նկատմամբ: Մի այլ խումբ գիտնականների հաջողվել է բակտերիայի պլազմիդան միացնել գորտի ԴՆԹ-ի մի առանձին հատվածի և ստանալ բազմացման ընդունակ ԴՆԹ-ի նոր մոլեկուլ: Այս օրինակներն ապացուցում են, որ գիտնականներն արդեն կարողանում են ստանալ ժառանգակիր նյութի «վերախմբավորված» մոլեկուլներ և անգամ պարզագույն օրգանիզմներ՝ օժտված որոշակի նոր հատկանիշներով:

Հետաքրքրական է նշել կենսաբանական ինժեներիայի մի այլ եղանակ ևս— բջիջների անմիջական հիբրիդիզացիան, որի օգնությամբ ժառանգական հատկանիշները մեկ բջջից տեղափոխվում են մի այլ բջիջ: Այս եղանակի դեպքում բջիջները միացվում են միմյանց տարբեր վիրուսների օգնությամբ: Նշված եղանակը նույնպես հնարավորություն է ընձեռում կատարելու կենսաբանորեն միմյանցից խիստ հեռու բջիջների հիբրիդիզացիա:

Սակայն նման հայտնագործությունները միաժամանակ որոշակի տագնապ են հարուցում: Ահա ինչ են գրում ամերիկյան մի խումբ գիտնականներ 1974 թ., համապատասխան մասնագետներին ուղղած իրենց դիմումում. «...չնայած նման փորձերը կնպաստեն կենսաբանության տեսական ու գործնական պրոբլեմների լուծմանը, սակայն դրանք, միաժամանակ, կարող են հանգեցնել ԴՆԹ-ի այնպիսի ինֆեկցիոն մոլեկուլների ստեղծման, որոնց բիոլոգիական առանձնահատկությունները չի կարելի նախօրոք կանխագուշակել: Ամենալուրջ հիմքերը կան ենթադրելու, որ այդ արհեստականորեն «վերախմբավորված» ԴՆԹ-ի մոլեկուլները բիոլոգիապես կարող են հաճախ վտանգավոր լինել...»: Դեռ ավելի վաղ, 1969 թ., երբ առաջին անգամ աղիքային ցուպիկից անջատվեց գեներից մեկը, նշված հետազոտությունների հեղինակ Ջ. Շապիրոն հայ-

տարարեց, որ թողնում է գիտահետազոտական աշխատանքները, քանի որ վստահ չէ, թե նման հայտնագործությունները վնաս չեն բերի մարդկությանը: Հետագայում, 1975 թ., Ամերիկայի գիտությունների ազգային ակադեմիայի կենսաբանական բաժանմունքին կից «ԴՆԹ-ի վերափոխման կոմիտեն», որի կազմում կան տասնմեկ խոշոր մասնագետներ, մոլեկուլյար կենսաբանների ուշադրությունը հրավիրեց այն վտանգավոր երևույթների վրա, որոնք կարող են ծագել, եթե ամենախիստ հսկողության չենթարկվեն կենսաբանական ինժեներիայի բնագավառում ծավալվող ուսումնասիրությունները: Դժվար չէ պատկերացնել, որ անկախ փորձարարի ցանկությունից և առանց նրա գիտության նման ուսումնասիրությունների ժամանակ կարող են առաջանալ այնպիսի նոր, վիրուլենտ, անտիբիոտիկների նկատմամբ կայուն ինֆեկցիոն միկրոօրգանիզմներ, որոնցով, անհրաժեշտ նախազգուշական պայմանների բացակայության պայմաններում, կարող են վարակվել հենց իրենք՝ հետազոտողները և ուրիշներ, այդ կարող է հանգեցնել ցավալի հետևանքների: Ուստի, ըստ այդ գիտնականների, հետազոտողներն առայժմ պետք է հրաժարվեն նման փորձերից մինչև անհրաժեշտ պայմանների մշակումն ու ստեղծումը: Սակայն ակնհայտ է նաև այն, որ գիտության առաջընթացն անկասելի է: 1975 թ. փետրվարին, ԱՄՆ-ի Ասիլոմար քաղաքում հրավիրվեց մի համաժողով, որը քննարկեց մոլեկուլյար կենսաբանության և կենսաբանական ինժեներիայի զարգացման հետագա ուղիներն ու հնարավորությունները: Բացի 140 մասնագետներից համաժողովին մասնակցում էին մամուլի բազմաթիվ ներկայացուցիչներ և իրավաբաններ: ՍՍՀՄ գիտնականների խումբը գլխավորում էր ակադեմիկոս Վ. Էնգելգարդը: Համաժողովը մշակեց միջոցառումներ՝ կանխելու անսպասելի և անցանկալի հետևանքները, որ կարող են երևան գալ ուսումնասիրությունների ընթացքում:

Այսպես, օրինակ, առաջարկվում է ուսումնասիրությունները կատարել բակտերիալ այնպիսի շտամների վրա, որոնք մինչև 36° ջերմության պայմաններում չեն պահպանում իրենց գոյությունը: Կարևոր հանգամանք է նաև այն, որ համաժողովն անհրաժեշտ գտավ ուսումնասիրությունները գաղտնի չկատարել, նորագույն տվյալներին տեղյակ պահել աշխարհի բոլոր համապատասխան լաբորատորիաներին: Այս շատ կարևոր հանգամանք է բակտերիոլոգիական զենքի ստեղծման և, ընդհանրապես, այդ ասպարեզի աշխատանքներին վերահսկելու առումով:

Ակնհայտ է նաև, որ կենսաբանական ինժեներիայի զարգացումը մարդկությանը կարող է տալ չտեսնված բարիքներ ամենատարբեր բնագավառներում՝ հիվանդությունների բուժման, գյուղատնտեսական կուլտուրաների զարգացման, զանազան դեղամիջոցների ու բիոլոգիական պրեպարատների, ինչպես և միկրոբիոլոգիական արդյունաբերության զարգացման բնագավառում: Ահա ինչու ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը հատուկ որոշումներ են ընդունել և միջոցներ նախատեսել մոլեկուլյար կենսաբանության հետագա զարգացման համար: Սովետական գիտնականներն արդեն ունեն զգալի նվաճումներ կենսաբանական ինժեներիայի բնագավառում. նրանց նպատակն է գիտության այդ ասպարեզի նվաճումներն ու հնարավորություններն ի սպաս դնել մարդկության բարօրությանը:

# ԷՐԳՈՆՈՄԻԿԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ՄԱՐԴՈՒՆ

**Վ. Գ. ՉԱԼԱԲՈՎ**
Տեխնիկական գիտությունների թեկնածու

ՊԱՏՄԱԿԱՆՈՐԵՆ ՀԱՄԵՄԱՏԱԲԱՐ կարճ ժամանակամիջոցում մեծ փոփոխություններ են տեղի ունեցել մեր կյանքում: Փոխվել են նաև մարդկանց փոխգործողության բնույթը աշխատանքի պրոցեսում, մարդու և բնության փոխներգործությունը, զգալիորեն աճել է հոգեբնախոսական ֆունկցիաների բեռնվածությունը: Արդի պայմաններում բարդանում են տեխնիկական միջոցներն ու տեխնոլոգիական պրոցեսները: Գիտատեխնիկական հեղափոխությունը, արտադրության արդյունքների ֆունկցիոնալ նշանակության առումով, բնորոշվում է որպես անցում տեխնիկական միջոցներից տեխնիկական սիստեմների: Այդպիսի անցումն էապես փոխում է աշխատանքի պայմանները, բնույթն ու բովանդակությունը: Մարդն աստիճանաբար ազատվում է ֆիզիկական լարվածություն պահանջող էներգետիկ, տրանսպորտային և աշխատատար այլ ֆունկցիաներից, նրա համար ավելի հիմնական են դառնում մեքենաների աշխատանքի վերահսկման, ծրագրավորման ու կառավարման ֆունկցիաները:

Արտադրության կոմպլեքսային ավտոմատացմանն անցնելուն զուգընթաց մեծանում է մարդու՝ որպես աշխատանքի կառավարման սուբյեկտի դերը: Մարդը պատասխանատու է դառնում տեխնիկական ողջ սիստեմի արդյունավետության համար, նրա կատարած սխալը որոշ դեպքերում կարող է ծանր հետևանքներ ունենալ:

Ակներև է, որ աշխատանքային բարդ գործունեության պայմանների օպտիմալացման համար բավական չէ օգտագործել հոգեբանության, ֆիզիոլոգիայի, աշխատանքի հիգիենայի և այլ մասնակի հանձնարարականները: Անհրաժեշտ է փոխհամաձայնեցնել, շաղկապել այդ հանձնարարականները որոշ բնույթի աշխատանքային գործունեության և դրա ընթացքի պայմաններին ներկայացվող պահանջների միասնական սիստեմում: Կարևոր են ո՛չ միայն աշխատող մարդու ընկալման, մտածողության ու գործելու առանձին ֆունկցիոնալ հնարավորությունները, այլև նրա ողջ գործունեությունը: Հարկ է հաշվի առնել մարդու աշխատանքի նպատակասլացությունը պայմանավորող բոլոր հանգամանքները:

Գիտության ու տեխնիկայի զարգացումը, նպաստելով աշխատանքի պայմանների ընդհանուր բարելավմանը, հաճախ հանգեցնում է մարդու օրգանիզմի վրա որոշ անբարենպաստ գործոնների, ինչպես օրինակ, աղմուկի, վիբրացիայի, գազի, փոշու աղտեղության ազդեցության: Ուստի, աշխատանքային գործունեության պայմանների օպտիմալացումը հնարավոր է միայն մարդ-

աշխատանքի գործիք—աշխատանքի առարկա—արտադրամիջավայր սիստեմի նախագծման ժամանակ կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու միջոցով:

Այդպիսի սիստեմների ուսումնասիրությունն ու նախագծումն անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծել տեխնիկական գիտությունների և մարդու ու նրա գործունեության վերաբերյալ գիտությունների միավորման համար հարուցել հետազոտական նոր խնդիրներ: Դրանցից են մարդու՝ որպես ավտոմատացված սիստեմի բաղադրամասի, հատկանիշների բնութագրման հետ կապված հարցերը, մասնավորապես ինֆորմացիայի ընկալում, հիշողություն, վճիռների ընդունում, շարժումների և այլ պրոցեսների հետազոտություն, շարժառիթային պրոբլեմներ, գործելու պատրաստակամություն, տարբեր մասնագիտությունների մարդկանց կոլեկտիվ գործունեություն: Մարդու գործունեության արդյունավետության ապահովման առումով կարևոր նշանակություն ունեն հոգնածությունը, գործողությունների միօրինակությունը, ընկալման և ինտելեկտուալ բեռնվածությունը, աշխատանքային պայմանները, շրջապատող միջավայրի ֆիզիկական, բիոմեխանիկական և հոգեբնախոսական գործոնները: Կարևոր են նաև մարդու և մեքենայի փոխգործողությունն ապահովող նոր միջոցների նախագծման խնդիրները: Այդպիսի միջոցներից են տեսողական և լսողական ինդիկատորները, կառավարման օրգանները, հաշվիչ մեքենաների հատուկ հարմարանքները, նոր գործիքներն ու սարքերը: Էական են և սիստեմային բնույթի այն խնդիրները, որոնք կապված են մարդու և մեքենայի միջև ֆունկցիաների բաշխման, աշխատանքային պրոցեսի կազմակերպման, տվյալ մասնագիտությամբ աշխատելու համար կադրերի պատրաստման ու պրոֆեսիոնալ ընտրության հետ:

Նշված պրոբլեմները դարձել են մի նոր գիտության՝ էրգոնոմիկայի կոմպլեքսային ուսումնասիրության առարկան, որի նպատակն է օպտիմալացնել աշխատանքի պայմաններն ու ընթացքը, ինչպես և բարձրացնել աշխատողի պրոֆեսիոնալ վարպետությունը: Այսպիսով, քննելով աշխատանքային գործունեությունը՝ էրգոնոմիկան ուսումնասիրում է հատկապես մարդ—աշխատանքի գործիք—աշխատանքի առարկա—արտադրամիջավայր սիստեմները: Վերջիններիս օպտիմալացումը նշանակում է գտնել սիստեմների գործադրման հնարավոր ձևերից ամենանպատակահարմարը՝ որոշակի պայմանների ու ժամանակի համար: Այդ սիստեմների արդյունավետության չափանիշը ո՛չ միայն տեխնիկա-տնտեսական ցուցանիշն է, այլև աշխատողի առողջության պահպանությունը, նրա բազմակողմանի զարգացումը:

Այժմ գիտականորեն հաստատված է, որ մարդիկ անհատապես տարբեր են այս կամ այն պրոֆեսիան յուրացնելու ընդունակությամբ, աճող ինֆորմացիոն բեռնվածությանը նյարդային համակարգի հարմարվելու կարողությամբ: Այս հանգամանքը չպետք է անտեսել մասսաների մասնագիտություններն ընտրելու վերաբերյալ գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ կազմելիս: Փաստերը վկայում են, որ աշխատուժի հոսունության պատճառներից է նաև անբավարարվածությունը ընտրած պրոֆեսիայից: Հաճախ ճիշտ չընտրված պրոֆեսիան, աշխատանքով բավարարված չլինելու պայմաններում, անհատական հնարավորություններին ու կոչմանն անհամապատասխան աշխատանքային տևական գործունեությունը, մարդու տարբեր համակարգերի, առաջին հերթին, նյարդային համակարգին ընկնող բեռնվածությունը դառնում են հիվանդության պատճառ և բավականության փոխարեն հարուցում տհաճություն: Ահա թե ինչու գիտական հետազոտությունների հիման վրա այժմ արդեն մշակված են կոնկրետ հանձնարարականներ որոշ մասնագիտությունների ընտրության առնչությամբ:

Աշխատանքային կոնկրետ գործունեության համար մարդու պիտանիությունը որոշվում է պրոֆեսիոնալ կողմնորոշման և պրոֆեսիոնալ ընտրության մեթոդներով:

Պրոֆկողմնորոշումը միջոցառումների մի սիստեմ է, որի նպատակն է բացահայտել յուրաքանչյուր անհատի անձնական առանձնահատկությունները,



նախասիրություններն ու ընդունակությունները, օգնել նրան՝ բանիմացորեն ընտրելու այնպիսի պրոֆեսիա, որն ամենից ավելի է համապատասխանում նրա անհատական ունակություններին:

Պրոֆընտրությունը միջոցառումների մի սիստեմ է, որը հնարավորություն է ընձեռում՝ ի հայտ բերելու այնպիսի թեկնածուների, որոնք իրենց անձնական հատկություններով առավել պիտանի են տվյալ մասնագիտությունը սովորելու, դրանով կոնկրետ զբաղվելու, այդ բնագավառում աշխատելու համար: Հաշվի են առնվում կոնկրետ անհատի առողջական վիճակը, ֆիզիկական զարգացման, հանրակրթական պատրաստվածության մակարդակը, սոցիալական տվյալները, պրոֆեսիոնալ ընկունակությունները. այսինքն՝ կատարվում է բժշկական, սոցիալական ու հոգեբնախոսական ընտրություն:

Բժշկական ընտրության խնդիրն է՝ ի հայտ բերել այն մարդկանց, որոնք իրենց առողջական վիճակով հարմար են տվյալ աշխատանքային գործունեության համար: Մեր հասարակության գլխավոր խնդիրներից է հոգատարությունն աշխատավորների առողջության պահպանման համար, ուստի և պրոֆեսիոնալ ընտրության կոմպլեքսում վճռորոշ է բժշկական հանձնարարականը, որով պիտանի ճանաչված մարդկանց նկատմամբ միայն կիրառելի են ընտրության մյուս ձևերը:

Կրթական ընտրության նպատակն է՝ առանձնացնել այն անձանց, որոնց նախնական գիտելիքներն ապահովում են տվյալ մասնագիտության հաջող տիրապետումը կամ պրոֆեսիոնալ պարտականությունների անմիջական կատարումը: Բազմազան են սոցիալական ընտրության ֆունկցիաները, որի նպատակն է նվազեցնել կադրերի հոսունությունը և ապահովել մարդու բավարարվածությունն իր աշխատանքից: Դրա համար հայտաբերվում են տվյալ մասնագիտությունն ընտրելու շարժառիթները, կոլեկտիվի հետ ծանոթության աստիճանը և այլն:

Հոգեբնախոսական ընտրության նպատակն է՝ ի հայտ բերել այն անձանց, որոնք իրենց ընդունակություններով և անհատական հոգեբնախոսական հնարավորություններով համապատասխանում են ուսուցման յուրահատկությանը և կոնկրետ մասնագիտական գործունեության պահանջներին: Հոգեբնախոսական ընտրության հայրենական ու արտասահմանյան փորձը ցույց է տվել դրա արտադրական ու տնտեսական նպատակահարմարությունը: Այսպես, մի շարք հեղինակներ գտնում են, որ այդ ընտրության օգտագործումը հնարավորություն է ընձեռում 30—50 տոկոսով կրճատելու մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների մաղումը (որի պատճառը պրոֆեսիոնալ անընդունակությունն է), 10—25 տոկոսով մեծացնելու կառավարման սիստեմների աշխատանքի հուսալիությունը, 40—70 տոկոսով կրճատելու տրանսպորտի վթարները, 30—40 տոկոսով իջեցնելու մասնագետների պատրաստման ծախսերը[1-4]:

Անհատների ընտրությունը նպատակահարմար է կատարել հատկապես ըստ այն պրոֆեսիաների, որոնց համար մասնագետի պատրաստման հաջողությունը կամ աշխատանքային գործունեության արդյունավետությունն էապես պայմանավորված են նրա վիճակով և պրոֆեսիոնալ հոգեբնախոսական կարևոր ֆունկցիաների զարգացման աստիճանով: Բուհ ընդունվողի համար կարևոր նշանակություն ունի իր կոչումը ժամանակին որոշելը, ընտրած պրոֆեսիայի պահանջներին նրա նյարդային համակարգի անհատական հնարավորությունների համապատասխանության օբյեկտիվ գնահատումը: Մասնագիտությունից քննություն հանձնելու ժամանակ լավ կլիներ, որ դիմորդի հետ զրուցեին հոգեբանն ու բժիշկը, որոնք ժամանակին կօգնեին ընդունվողին՝ ճիշտ ընտրելու աշխատանքային ուղին: Օգտակար կլիներ այդ աշխատանքն սկսել հենց միջնակարգ դպրոցում, նվազագույնի հասցնելով աշխատանքային առավել հարմար ասպարեզ ընտրելու գործում կատարվող սխալները:

Մարդու պրոֆեսիոնալ պիտանիությունը և նրա ճիշտ պրոֆկողմնորոշումը ժամանակին բացահայտելու հարցը կապված է աշխատանքային գործունեու-

թյան մի շարք այլ կողմերի հետ։ Ճիշտ լուծել այդ՝ նշանակում է լուծել նաև ուսման ու աշխատանքի որակի, ինչպես և աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերը։

Աշխատանքի և դրա պայմանների օպտիմալացումը, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելով աշխատավորների առողջության պահպանման ու նրանց անհատականության զարգացման համար, հնարավորություն է ընձեռում էապես բարձրացնելու մարդու գործունեության արդյունավետությունն ու հուսալիությունը։ Այդ նշանակում է մարդուն դիտել ոչ թե սոսկ որպես որոշակի տեսակի աշխատանք կատարող, այլ որպես անհատ, որի բազմակողմանի զարգացումը արտադրաուժերի և ամբողջ հասարակության վերելքի պայմանն է[5]։

Արդի գիտության բնորոշ առանձնահատկություններից է, այսպես կոչված՝ սահմանագծային դիսցիպլինների առաջացումը, ինտեգրացումը, սինթեզումը։ Այդ գիտություններից է էրգոնոմիկան, որը խթանում է ֆիզիոլոգիայի, հոգեբանության, աշխատանքի հիգիենայի, տեխնիկական էսթետիկայի, սոցիոլոգիայի զարգացումը, առաջադրում նոր, առավել հանգուցային պրոբլեմներ։ Այժմ կարևոր է աշխատանքային գործունեության հիմքը կազմող հոգեկան պրոցեսների ու ֆիզիոլոգիական ֆունկցիոնալ սիստեմների ամբողջական բնութագրումը, մարդու գործունեության ինտենսիվությունն ապահովող սանիտարա-հիգիենիկ նորմաների սահմանումը։

Այդ նպատակով անհրաժեշտ է փորձարարական հետազոտությունների յուրօրինակ սիստեմ, տարբեր մեթոդների (ինժեներական, հոգեբանական, ֆիզիոլոգիական և այլն) միավորում մի ընդհանուր շղթայում։ Վերջինս ենթադրում է գիտական ինֆորմացիայի պատշաճ կազմակերպում։ Այստեղ կարևոր է նաև մշակել մաթեմատիկական այնպիսի ապարատ, որը հնարավորություն ընձեռի տարբեր գործոններ սինթեզելու և սահմանելու աշխատանքային գործունեության կոնկրետ տեսակների օպտիմալացման առավել ռացիոնալ եղանակներ։

Էրգոնոմիկան, ինչպես և ամեն մի նոր դիսցիպլին, չի կարող զարգանալ առանց գիտական ու գործնական համապատասխան կադրերի։ Ներկայումս էրգոնոմիկայով զբաղվում են տարբեր նախնական կրթություն և աշխատանքի փորձ ունեցողները։ Սակայն այժմ արդեն զգացվում է այդ պրոֆիլի մասնագետների սիստեմատիկ պատրաստման խիստ անհրաժեշտություն։

Ժողովրդական տնտեսության հետագա վերելքն անհնար է պատկերացնել առանց էրգոնոմիկայի կիրառման՝ արտադրության բոլոր բնագավառներում։

Այդ նշանակում է արտադրության կազմակերպիչների և տեխնիկական մասնագետների շրջանում տարածել էրգոնոմիկական կուլտուրան՝ որպես արտադրական աշխատանքային ընդհանուր կուլտուրայի բաղկացուցիչ մաս։ Դրա համար ամենից առաջ կարևոր է հենց իր՝ էրգոնոմիկայի, որպես որոշակի և ճանաչում գտած գիտատեխնիկական դիսցիպլինի ուսուցումը։ Անհրաժեշտ է էրգոնոմիկական գիտելիքների դասընթացներ կազմակերպել պրոֆեսիոնալ բոլոր հաստատություններում և հանրակրթական դպրոցներում։

Հայտնի է, որ զարգացած երկրներում էրգոնոմիկան ուսումնասիրում են տեխնիկական և տնտեսագիտական բարձրագույն ուսումնական հաստատություններում, ղեկավար աշխատողների կատարելագործման կուրսերում և սեմինարներում, ստեղծել են էրգոնոմիկայի և կիբեռնետիկայի ամբիոններ։ Գործում են միամյա կուրսեր ինժեներների, ճարտարապետների, նախագծողների և հասարակական գիտությունների, կենսաբանության ու ֆիզիկայի բնագավառներում աշխատող մասնագետների համար։

Աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմները վաղուց դարձել են մի շարք ամբիոնների ուսումնասիրության առարկա և կամրջում են տարբեր բնագավառների մասնագետների գիտական նախասիրությունները։

Ուշագրավ է Կալուգայի մարզի գյուղական դպրոցների V—VIII դասարանների 2.000 աշակերտների մասնագիտական ընտրության հիմնավորումների ուսումնասիրությունը, որի շնորհիվ պարզվել է նրանց հետաքրքրությունը որոշակի մասնագիտության նկատմամբ[6]։



Էստոնիայի միջնակարգ դպրոցների շրջանավարտներին առաջարկվել է առանձնացնել այն հանգամանքները, որոնք անպայման պետք է հաշվի առնել մասնագիտությունն ընտրելիս և ապա նշել դրանցից ամենակարևորները։ Հարցերին պատասխանել են 2.000-ից ավելի դպրոցականներ։ Շրջանավարտների 91,5 տոկոսը հետաքրքրությունը որոշակի մասնագիտության նկատմամբ նշել է որպես հույժ անհրաժեշտ հանգամանք[7]։

Լենինգրադ քաղաքի և Լենինգրադի մարզի 50-ից ավելի միջնակարգ դպրոցների մոտ 3.000 շրջանավարտների առաջադրվել է Ինչո՞վ է ձեզ հրապուրում մասնագիտությունը, որով ցանկանում եք աշխատել կամ սովորել դպրոցն ավարտելուց հետո հարցը, պատասխանել են. հետաքրքրությունն աշխատանքի բովանդակության նկատմամբ, մասնագիտության նշանակությունը ժողովրդական տնտեսության համար, աշխատավարձը, մասնագիտության առանձնահատկությունները։

Լայնորեն ծավալվում են էրգոնոմիկական գիտագործնական աշխատանքներն արդյունաբերության բնագավառում։ Հոգեբաններն ու մանկավարժներն արտադրության աշխատողների համագործակցությամբ որոշակի հաջողությունների են հասել աշխատանքի արդյունավետության բարձրացման մարզում։ Այսպես, հոգեբանա-ֆիզիոլոգիական հետազոտություններ են կատարվել «Հայգունմետգիտնախագիծ» ինստիտուտի աշխատանքի պաշտպանության լաբորատորիայում. բարձր լեռնային պայմաններում աշխատող վարորդների շրջանում կատարված ուսումնասիրության ընթացքում օգտագործվել են հետևյալ տեստերը. մտածողության արագությունը, ուշադրության կենտրոնացման տևողությունը և ուժը, ուշադրության շեղումը, ժամանակի զգացողությունը և փորձարարական հոգեբանական այլ տեստեր։

Հոգեբանական հանձնարարականների գործադրումը պրոֆեսիոնալ ընտրության ոլորտում չափազանց բարդ, պատասխանատու խնդիր է։ Բացի խորագիտակ ու փորձառու լինելուց սույն խնդիրը լուծողները պետք է վարվեն շատ զգույշ, նրբանկատ։ Այդ անհրաժեշտ է, հատկապես, այն թեկնածուների հետ աշխատելիս, որոնց ստուգման արդյունքները ցածր են տվյալ պրոֆեսիայի համար պահանջվող նորմաներից։ Եթե նույնիսկ հոգեբանը համոզվում է, որ տվյալ մասնագիտությունն աննպատակահարմար է մարդու համար, նա չպետք է արտահայտվի կտրուկ դատողություններով։ Այստեղ անհրաժեշտ է անհատական մոտեցում յուրաքանչյուր թեկնածուին։ Ոչ թե պետք է փակել տվյալ պրոֆեսիան տանող ճանապարհը, այլ խորհուրդ տալ և հանձնարարել այս կամ այն կոնկրետ քայլը։ Եվ սկզբունքորեն բացառված չէ, որ խիստ որոշակի, կայուն պրոֆեսիոնալ նպատակասլացություն, կամքի մեծ ուժ ունեցող մարդը երբեմն կարող է լավագույն հաջողությունների հասնել ցանկացած պրոֆեսիայում։

Պրոֆընտրության հիմնական խնդիրն ու դժվարությունն այն է, որ պետք է կանխատեսվեն պրոֆեսիոնալ հաջող մասնագիտացման հնարավորությունները գործունեության այն բնագավառում, որով մարդը նախկինում չի զբաղվել։ Անշուշտ այդ դժվար է, բայց և անհրաժեշտ։ Կարելի է, իհարկե, սպասել, մինչև մարդը սովորի և սկսի աշխատել, ապա, որոշ ժամանակ անց, գնահատել նրա պրոֆեսիոնալ պիտանիությունը։ Սակայն անհաջող ելքի դեպքում սպասելու հետևանքը կլինեն ժամանակի կորուստը, նյութական զգալի միջոցների ծախսումը և, որ գլխավորն է՝ բարոյական վնասը մարդուն։

Աշխատանքի ընդունելիս կարելի է զրուցել թեկնածուի հետ, առաջարկել, լրացնել որոշ փաստաթղթեր։ Բայց մարդը կասի միայն այն, ինչ գիտե իր մասին— կենսագրական տվյալներ, տեղեկություններ պրոֆեսիոնալ շահերի, իր հակումների, կրթության, տարբեր առարկաներից ունեցած հաջողության և ձեռք բերած գործնական փորձի մասին։ Այս ամենը շատ կարևոր է պրոֆեսիո-

նալ ընտրության առումով։ Սակայն հաջող մասնագիտացման համար շատ անհրաժեշտ յուրահատուկ ունակությունների մասին թեկնածուն կարող է հաղորդել միայն տվյալ պրոֆեսիայի բնագավառում ինքնափորձի որոշ շրջան անցնելուց հետո։ Հաճախ պահանջվում են հատուկ ընդունակությունների կարճատև ստուգումներ այնպիսի տեստերի օգնությամբ, ինչպես՝ ընդունակությունները, գիտելիքների մակարդակը, հաջողակությունը և այլն։ Կազմելով տեստային առաջադրանք՝ հարկ է ձգտել ռեալ գործունեության հետ դրա ոչ թե արտաքին, այլ ներքին նմանության։ Առաջադրանքի հոգեբանական բովանդակությունը պետք է համընկնի աշխատանքային ռեալ գործունեության հետ, այն պետք է ոչ թե նմանակի, այլ մոդելավորի ռեալ գործունեությունը։ Այսպիսով, հատուկ ընդունակություններն ստուգելիս թեկնածուին տալիս են մի առաջադրանք, որը պրոֆեսիոնալ գործունեության հոգեբանական մոդելն է։ Որքան շատ հաջողվի մոդելին հաղորդել գործունեության ներքին, հոգեբանական բովանդակությունը, այնքան ավելի բարձր կլինի ստուգումների նշանակությունը։ Որոշ դեպքերում ո՛չ միայն չպետք է ձգտել արտաքին նմանության, այլ ամեն կերպ խուսափել դրանից։ Թեկնածուին կարելի է առաջարկել կատարել այնպիսի գործողություններ, որոնք առաջին հայացքից ոչ մի առնչություն չունեն աշխատանքային պրոցեսների հետ, սակայն բացահայտում են մարդու հոգեկան գործունեության մեխանիզմն ու օրինաչափությունները, որոնք անհրաժեշտ են աշխատանքի պրոցեսների ճիշտ ուսումնասիրության համար[8]։

Այսպիսով, ընդունակությունների տեստերի համար գլխավորը պրոֆեսիոնալ ռեալ գործունեությանը հոգեբանական բովանդակություն հաղորդելն է, ոչ թե դրա արտաքին նմանակումը, այլ հոգեբանական էական առանձնահատկությունների մոդելավորումը։

Պրոֆեսիոնալ ընտրության հարցերն առավել այժմեական են դառնում հայրենական արդյունաբերության մեջ։ Լույս են տեսնում հատուկ հրապարակումներ, ծավալվում է գիտահետազոտական և գիտապրակտիկ աշխատանք, ստեղծվում են հատուկ լաբորատորիաներ։ Կրիվոյ-Ռոգի լեռնահանքային ավազանի արևելյան հարստացուցիչ կոմբինատում հանձնարարականներ են մշակվել լեռնահանքային արդյունաբերության բանվորների ընտրության և պատրաստման վերաբերյալ։

ՌԻՍՍՀ գիտությունների ակադեմիայի հոգեբանության գիտահետազոտական ինստիտուտում ուսումնասիրվել է լեռնափրկարարների գործունեությունը՝ այդ պրոֆեսիայի ներկայացուցիչների ընտրության ու ստաժավորման սիստեմի կատարելագործման նպատակով։ Մշակվել է մեթոդիկաների կոմպլեքս՝ լեռնափրկարարների հոգեբանական ընտրության համար[9]։ Լենինգրադում մշակվում են օպերատորների պրոֆեսիոնալ ընտրության մեթոդիկաներ[10]։ Լատվիական ՍՍՀ-ում ուսումնասիրվել է խառատի պրոֆեսիան և կազմվում են պրոֆընտրության մեթոդական հիմունքներ[11]։ Գունավոր մետալուրգիայի՝ Երևանի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտում էրգոնոմիկական ուսումնասիրություններ են կատարվում որոշելու համար էքսկավատորավարների պրոֆեսիոնալ պիտանիության չափանիշները։ Հետազոտություններում կիրառվում են էլեկտրահոգեբնախոսական ժամանակակից մեթոդները, հաշվի են առնվում նյարդային բարձր գործունեության սրտանոթային սիստեմի հիմնական ցուցանիշները, մարդաչափական տվյալները և այլն։

Հոգեբնախոսական ընտրության համակարգը բովանդակում է. աշխատանքային պրոցեսի, ինչպես նաև աշխատանքային գործունեության ֆիզիոլոգիահիգիենիկ և հոգեբնախոսական առանձնահատկությունների վերլուծությունը, նշված մեթոդական ձևերի հուսալիության և շերտավորվածության գնահատականը, մասնագիտական ընտրանք անցած անձանց պրոֆեսիոնալ պիտանիության փորձարարական ստուգումը և չափանիշների մշակումը, ընտրության անցկացման կազմակերպա-մեթոդական ձևերի մշակումը։



Տասներորդ հնգամյակում ավելի կմեծանա սոցիալական տարբեր խմբերի պրոֆկողմնորոշման, տարբեր մասնագիտությունների մարդկանց պրոֆեսիոնալ ընտրության և պրոֆեսիոնալ պիտանիության պրոբլեմների նշանակությունը։ Այդ պրոբլեմները դեռևս կարոտ են լուրջ ուսումնասիրության։ Շատ բան այստեղ պայմանավորված է հենց էրգոնոմիկայով, արդյունաբերական հոգեբանությամբ, ֆիզիոլոգիայով և աշխատանքի հիգիենայով զբաղվող մասնագետների ակտիվ գործունեությամբ։

Այս ասպարեզում մեծ անելիքներ ունեն նաև արտադրության հրամանատարները, կուսակցական, հասարակական կազմակերպությունները. նրանց ակտիվ օգնությամբ ու համագործակցությամբ միայն հնարավոր կլինի հասնել որոշակի հաջողությունների։

ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑԱՆԿ.

1. Ярошевский М. С.—Психология в XX столетии. Теоретические проблемы развития психологической науки. Госполитиздат, 1971 г.

2. Выготский Л. С.—Избранные психологические произведения. М., изд-во АПН РСФСР, 1956.

3. Павлов И. П.—Полное собрание трудов. М., изд-во АН СССР, 1949.

4. Ухтомский А. А.—Сбор. сочинений, т. 1—4, Л., изд-во ЛГУ, 1949—54.

5. Человек—наука—техника (Опыт марксистского анализа научно-технической революции), М., Госполитиздат, 1973, стр. 349.

6. Сахаров В. Ф.—О формировании мотивов выбора будущей профессии у учащихся V—VIII классов сельской школы. «Вопросы психологии», 1966, № 2.

7. Титма М. Х.—Факторы, определяющие выбор профессии. В кн.: Молодежь и труд. Всесоюзная научно-теоретическая конференция. «Социализм и молодежь», М., «Молодая гвардия», 1970.

8. Архангельский С. Н.—Очерки по психологии труда. Под редакцией Н. Ф. Добрынина. М., Трудрезервиздат, 1958.

9. Николенко Д. Ф., Назимов И. М., Федоришин Б. О.—В кн.: Вопросы психологии.

Тезисы докладов на Республиканской психологической конференции. Киев, «Радянська школа», 1964.

10. Сысоев Н. В., Петрушевский И. И., Кузнецов Р. В.—К вопросу о прогнозировании профессиональных способностей операторов методом изучения некоторых психических и физических качеств. В кн: Материалы III Всесоюзного съезда общества психологов СССР. т. 3, Вып. I, М., 1968.

11. Методические основы профессионального отбора. Рига, ЛатИНТИ, 1968.

# ՕՐՎԱ ՀՈԳՍԵՐ

## ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐԻ ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐԻՆ՝ ՊԱՏՇԱՃ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ

Ռ. Վ. ՌՈՒԲԻՆՅԱՆ

*Ալ. Մյասնիկյանի անվան Հանրապետական գրադարանի գիտամեթոդական բաժնի վարիչ*

ԱՆՑԱԾ ՏԱՐԻՆԵՐԻՆ մեր հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Աշխատավորների կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի գործում գրադարանների դերի բարձրացման մասին» (1974 թ.) որոշման կատարման առումով: ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նույն հարցի վերաբերյալ համատեղ որոշումը ուղենիշ հանդիսացավ, որպեսզի մեր կուսակցական ու սովետական կազմակերպություններն ավելի արդյունավետ զբաղվեն գրադարանների գործով, բարելավեն կադրերի ընտրությունն ու տեղաբաշխումը, հոգան գրադարանների նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար:

Նույն որոշմամբ իրականացվում է գրադարանների կենտրոնացումը: Հանրապետությունում արդեն գործում են պետական մասսայական գրադարանների վեց միավորումներ, որոնք նոր սկզբունքներով են կազմակերպում աշխատավորների և աճող սերնդի գրադարանային-մատենագիտական սպասարկումը:

Պետական մասսայական գրադարանների կենտրոնացումը կատարվում է ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության կողմից հաստատված կանոնադրության համաձայն: Ամեն մի շրջանում, հանրապետական ենթակայության խոշոր քաղաքներում ստեղծվում է մեծահասակներին և մանուկներին սպասարկող գրադարանների մեկ միավորում: Այժմյան շրջանային (քաղաքային կենտրոնական) գրադարանները դառնում են մայր գրադարան, իսկ մնացած՝ գյուղական, քաղաքային, մանկական և ակումբին կից գրադարանները վերածվում են գրադարան-մասնաճյուղերի: Այդպիսով, միասնական են դառնում ամեն մի շրջանի (քաղաքի) պետական մասսայական գրադարանների գրքային ֆոնդը, հաստիքներն ու ղեկավարումը: Մեկ նախահաշվում են կենտրոնացվում գրադարանների պահպանման ու զարգացման նպատակով պետության հատկացրած միջոցները: Մանր, տարանջատ գործող գրադարանների փոխարեն ստեղծվում են ավելի կարող, հարուստ գրադարանային համակարգեր, որոնք ի վիճակի են բավարարելու սովետական մարդկանց օրավուր աճող պահանջները:

Այսպես, Կիրովականի միավորման կենտրոնական գրադարանը, չնայած ստեղծման կարճ ժամանակամիջոցին, կարողացել է դառնալ քաղաքի բնակչության, հատկապես երիտասարդության, հաճելի վայրերից մեկը, ուսանողության գիտելիքների աղբյուրը: Հետաքրքրական են անցնում այստեղ կազմակերպվող գրքի ցուցահանդեսները, մատենագիտությանը նվիրված առանձին հրատարակությունների քննարկումները նպաստում են գրականության պրոպագանդմանը, ընթերցանության կուլտուրայի զարգացմանը:

Այս կարևոր խնդրում պատշաճ հոգածություն ցուցաբերեց ՀԿԿ Կիրովականի քաղկոմը: Ժամանակին կառուցվեց Կիրովականի միավորման կենտրոնական գրադարանի տիպային շենքը, կահավորվեց ինչպես հարկն է, ապահովվեց տեխնիկական միջոցներով: Հատկապես լավ կազմակերպվեցին գրադարանային աշխատողների ընտրությունն ու վերաբաշխումը: Արդյունքը շուտով ակներև դարձավ: Եթե 1974 թ. Կիրովականի 13 պետական մասսայական գրադարանները միասին ունեին 18.166 ընթերցող, ապա 1975-ին, գրադարանների միավորման պայմաններում, այդ թիվը հասել է 26.341-ի: Նույն ժամանակամիջոցում գրքատացքն ավելացել է 158.983 միավորով:

Նույնը կարելի է ասել նաև Դիլիջանի գրադարանների միավորման մասին: Այստեղ կենտրոնական գրադարանին է տրամադրվել նորակառույց, չորս հարկանի տիպային շենք՝ ընդարձակ ու լուսավոր դահլիճներով: 1974 թ. Դիլիջանի գրադարաններն էր հաճախում քաղաքի բնակչության 35, իսկ 1975 թ.՝ 42,1 տոկոսը: Ցուցանիշը, իհարկե, համեստ է, բայց գրադարանների միավորման համար լավագույն պայմանների ստեղծումը հուսալի երաշխիք է աշխատավորների գրադարանային սպասարկումը բարձր մակարդակով կազմակերպելու, ընթերցողների թիվն ավելացնելու գործում:

Նույն բանը, ցավոք, չենք կարող ասել Թալինի գրադարանների միավորման մասին. այն ստեղծվել է հիշատակված միավորումների հետ մեկտեղ, բայց ոչ մի կերպ չի կարողանում դուրս գալ կազմակերպական շրջանից:

Գրադարանների կենտրոնացման մասին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1974 թ. որոշումից հետո հանրապետությունում առաջինն այդ գործին ձեռնամուխ եղավ Թալինի շրջանը: Շրջկենտրոնի կուլտուրայի հոյակապ պալատում էին տեղավորված նախկին շրջանային և մանկական գրադարանները, կար նաև լրացուցիչ տարածություն կենտրոնական գրադարանի համար: Հուսադրող էր նաև շրջանում բարձրագույն, միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի առկայությունը: Թալինի շրջկոմը և շրջսովետի գործկոմը համատեղ որոշում կայացրին 1975 թվականին կենտրոնացնելու իրենց շրջանի մասսայական գրադարանները: Կատարվեցին նախապատրաստական որոշ աշխատանքներ: Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության՝ գրադարանները կենտրոնացնելու մասին հրամանին ևս ոչ մի փոփոխություն չհետևեց Թալինի գրադարանում: Կուլտուրայի բաժնի վարիչ Բ. Հարոյանը ընդամենը մեկ սենյակ տրամադրեց գրադարանին և դրանով հարցը համարեց ավարտված: Շրջանային և մանկական գրադարանները մնացին նախկին վիճակում, նույնիսկ չվերանորոգվեցին: Դեռևս երկու տարի առաջ որոշվել էր կուլտուրայի պալատի նկուղը հարմարեցնել գրապահոցի համար, բայց մինչև օրս ոչինչ արված չէ: Ավելին, պալատի այն սենյակները, որոնք կարող էին տրամադրվել կենտրոնական գրադարանին, բաժնի վարիչ Հարոյանը լցրել է ինչ-որ ցուցանմուշներով, դռներն ամուր փակել և հայտարարել, թե կազմակերպում է թանգարան, մոռանալով, որ կուլտուրայի մինիստրությունում չգրանցված թանգարանի կազմակերպումն ապօրինի է:

Գրադարանների միավորում կազմակերպելու առիթը չօգտագործվեց շրջանում գրադարանային աշխատողների ատեստացիա անցկացնելու, կադրերի բանիմաց վերադասավորում կատարելու համար: Այդ ամենից հետո պատահական չէ, որ մյուս շրջանների հետ համեմատած, Թալինում խիստ անբավարար է աշխատավորների գրադարանային սպասարկումը:

Գրադարանների կենտրոնացման գործին անհրաժեշտ հոգատարություն է ցույց տրվել Արարատի, Կրասնոսելսկի և Շամշադինի շրջաններում: Կենտրոնական գրադարաններին են տրամադրվել համապատասխան շենքեր, դրանք նորոգվել ու հարմարեցվել են գրադարանային աշխատանքներին: Համեմատաբար լավ են վերաբաշխված կադրերը: Սակայն այս միավորումներում ևս կան թերություններ, չլուծված հարցեր: Զգձգվում է գրքային միասնական ֆոնդի վերաբաշխումը գրադարան-մասնաճյուղերի միջև, ստեղծված չեն համահավաք կատալոգներ՝ մերժումները մինիմումի հասցնելու համար, գիտականորեն չեն կազմակերպվել նոր գրքերով ֆոնդերի համալրումը և այլն: Շամշադինի շրջանում կենտրոնական գրադարանի սենյակներից մեկում է գտնվում սերմերի լաբորատորիան:

Նշված թերություններն ու բացերը հետևանք են կուլտուրայի մինիստրության համապատասխան բաժնի և գրադարանագիտության հանրապետական մեթոդական կենտրոնների ոչ հետևողական, անբավարար աշխատանքի:

Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությունը, ելնելով ՀԿԿ շրջկոմների և շրջսովետների գործկոմների՝ դեռևս 1974 թ. կայացրած համատեղ որոշումներից, պլանավորել է (պլանը հաստատվել է ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության կողմից և օրենքի ուժ ստացել) 1976 թ. ընթացքում կենտրոնացնել հանրապետության տասը շրջանների և Լենինական քաղաքի մասսայական գրադարանները: Կուտակված փորձն օգնել է՝ համեմատաբար լավ կազմակերպելու կենտրոնացման նախապատրաստման աշխատանքները: Սեմինար պարապմունքների մեկամսյա դասընթացների, անհատական և խմբային կոնսուլտացիաների և այլ միջոցներով

նշված վայրերի գրադարանավարները ծանոթացել են նոր ձևով աշխատելու հիմունքներին: Գրադարանների ֆոնդերից առանձնացվել են սակավ օգտագործվող և բազմօրինակ հրատարակությունները, շատ տեղերում խմբագրվել են այբբենական և սիստեմատիկ կատալոգները: Պլանավորվել են նաև այդ գործում ընթերցողների ներգրավման ու գրքատացքի աշխատանքները:

Գրադարանների կենտրոնացման հիմնական դժվարությունն այս տարի ևս կենտրոնական գրադարանների համար շենքային լրացուցիչ տարածություններ տրամադրելն է: Եթե Լենինականում, Ղուկասյանում, Վարդենիսում, Եղեգնաձորում, Արտաշատում, Հոկտեմբերյանում, Աշտարակում հաջողությամբ լուծվել կամ լուծվում է այդ խնդիրը, ապա այդպես չէ Ախուրյանի, Սևանի, Կալինինոյի, Թումանյանի շրջաններում:

Կալինինոյի շրջանի ղեկավարությունը, անտեսելով իր իսկ որոշումը, շրջանի գրադարանների կենտրոնացումը կապեց շրջկենտրոնում փոստի բաժանմունքի նոր շենքի կառուցման հետ և, այդպիսով, հարցը համարեց սպառված:

Ախուրյանի շրջանում նախատեսված էր շրջանային գրադարանին կից սենյակներն ազատել: Երբ դրանք դատարկվեցին, անմիջապես հատկացվեցին այլ նպատակների: Սևան և Ալավերդի քաղաքներում հնարավորություններ կան կենտրոնական գրադարանների հարցը դրականապես լուծելու: Բայց նախապատրաստական աշխատանքների տարին անցավ, իսկ գործը տեղից չի շարժվում:

ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի համատեղ որոշմամբ սահմանված է գրադարանների կենտրոնացումն ավարտել 1980 թվականին: Պետական մասսայական գրադարաններից բացի, պետք է միավորվեն արհմիութենական, ուսումնական հաստատությունների, տեխնիկական և այլ գրադարաններ: Կուսակցական և սովետական ղեկավար մարմինների, ինչպես և տնտեսական կազմակերպությունների խնդիրն է ժամանակին ավարտել գրադարանների՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի այդ կարևոր խթանիչների աշխատանքի վերակառուցումը:

---

## ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

# ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՆՈՐ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ*

*Ժամանակի թելադրանքով մեր մոտ ևս առաջին լուրջ քայլերն է անում սոցիոլոգիական գիտությունը: Տպագրվում են լրագրային և ամսագրային հոդվածներ ու հետազոտություններ: Երևանի պետական համալսարանի հրատարակչությունը լույս է ընծայել փիլիսոփայական գիտությունների դոկտոր Գուրգեն Մխիթարյանի «Սոցիոլոգիական ուսմունքների պատմության» առաջին (1971 թ.) և երկրորդ (1974 թ.) պրակները, որոնք հարուստ նյութ են պարունակում այս կարևոր գիտության անցած ճանապարհի վերաբերյալ: Հետաքրքրական են հատկապես փիլիսոփայական գիտությունների դոկտոր Լյուդվիգ Կարապետյանի աշխատությունները, ուր կառավարման տեսության, հասարակական կարծիքի և կուսակցական-գաղափարական աշխատանքի հարցերը քննարկվում են արդիական պահանջների մակարդակով:*

*Սովետական սոցիոլոգներն արծարծում են քաղաքի ու գյուղի, ուրբանիզացիայի և գիտատեխնիկական հեղափոխության, քաղաքականության և հումանիզմի պրոբլեմները՝ հենվելով սոցիոլոգիական կոնկրետ հետազոտությունների տվյալների վրա: Խորանալով հասարակական կարծիքի ոլորտը, նրանք բարձրացնում են ուշադրությունից վրիպած, սակայն հույժ կարևոր ու լուծման կարոտ պրոբլեմներ: Մանրազնին ուսումնասիրվում են ընտանիքի ու սոցիալական հարաբերությունների կապերը:*

*Արդ, ողջունելի է* Սոցիոլոգիական հետազոտությունները գաղափարական աշխատանքի *պրակտիկայում գրքույկի հրատարակումը՝ ՀԿԿ Կենտկոմի և Երքաղկոմի քաղաքական լուսավորության տան նախաձեռնությամբ:*

*Հեղինակը՝ Ա. Հովսեփյանը, իր այս փոքրածավալ ուսումնասիրության մեջ անդրադարձել է մի շարք էական հարցերի, կատարել հետաքրքրական եզրահանգումներ ու ընդհանրացումներ, որոնք գործնական նշանակություն ունեն:*

*ՍՄԿԿ-ի XXIV համագումարում, ապա՝ գաղափարական աշխատանքին վերաբերող հետագա որոշումներում նշվեց համալիր խնդիրների գիտական ուսումնասիրության կարևորությունը, կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց գաղափարական կյանքի մակարդակի բարձրացման, պրոպագանդման, ագիտացիան առավել ներգործուն դարձնելու վրա:*

*Երկրի առջև ծառացած վիթխարի խնդիրների լուծման համար անհրաժեշտ է կատարելագործել կառավարման ու արտադրության կազմակերպումը: Ահա թե ինչու անչափ կարևոր է գիտական սկզբունքների կիրառումը սոցիալ-տնտեսական պրոցեսների վերլուծման ու բնութագրման գործում: Ճիշտ է վարվել հեղինակը* Սոցիոլոգիան ամենուր *բաժնում ընդգծելով նաև հետևյալ հանգամանքը. հենվելով մի շարք այլ գիտությունների վրա, պետք է «...բազմակողմանիորեն ուսումնասիրել հասարակական կյանքն ու նրա զարգացման միտումները սոցիալական որոշակի միջավայրում, բացահայտել կոնկրետ միկրոմիջավայրի իրական վիճակը, գիտականորեն վերհանել հակասությունների բնույթը»:*

*Հեղինակն իրավամբ է նկատել, որ մեր օրերում հասարակական շատ երևույթների տեսա-*

---

* Ս. Ս. Հովսեփյան— *Սոցիոլոգիական հետազոտությունները գաղափարական աշխատանքի պրակտիկայում*, Ե., «Գիտելիք» ընկ., 1975 թ.:

կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների՝ նրանց դեմ մղած սկզբունքային հետևողական պայքարը:

Հայտնի է, թե կուսակցությունը որքան մեծ կարևորություն էր տալիս անգրագիտության վերացման, սովետական դպրոցի զարգացման և ընդհանրապես կուլտուրական հեղափոխության հարցերին: Այդ և երիտասարդության կոմունիստական դաստիարակության մյուս խնդիրների առնչությամբ կուսակցության վարած քաղաքականությունը ևս արտացոլվել է մենագրության մեջ. Գրքի վերջին՝ երրորդ գլխում, նշելով կուլտուրական հեղափոխության նշանակությունն ու հիմնական ուղղությունները, հեղինակը բացահայտում և սահմանում է կոմերիտմիության դերը տնտեսական ու հոգևոր վերափոխությունների պրոցեսում:

Կուսակցության ղեկավարությամբ սոցիալիզմի հիմքերի ստեղծման տարիներին կոմերիտմիությունը ակտիվորեն մասնակցում էր ժողովրդական կրթության զարգացմանը, համընդհանուր գրագիտության համար, հնի մնացուկների, սոցիալիստական համակեցությանն անհարիր երևույթների դեմ մղվող պայքարին: Կոմերիտմիությունը ստանձնեց պարտուսի շեֆությունը՝ այդ հայրենանվեր գործին տրամադրելով մամուլը, պրոպագանդայի մյուս միջոցները:

Հայտնի է, որ նոր հասարակարգի կառուցմանը խոչընդոտում էին նաև բյուրոկրատական տարրերը: Կուսակցության կոչով կոմերիտմիությունը պայքարի ելավ ընդդեմ բյուրոկրատիզմի ու հակահասարակական երևույթների: Ստեղծվեցին, այսպես կոչված, «թեթև հեծելազորի» խմբեր, որոնք հանկարծակի հայտնվում էին տեղերում և ստուգումների միջոցով բացահայտում թերությունները: Նրանք ջրի երես էին հանում պետական ապարատներում պրոլետարական պետությանն անհարիր ձևականության, կաշառակերության, քաշքշուկի, կոպտության և այլ երևույթներ, անողոքաբար ձաղկում դրանք: Կոմերիտմիության առաջնահերթ խնդիրներից էր նաև իր ակտիվի գործուղումը՝ սոցիալիստական շինարարության զանազան տեղամասերում աշխատելու:

Կարևոր էր նաև երիտասարդության աթեիստական դաստիարակությունը, նրա օգնությամբ աշխատավորական հետամնաց խավերին կրոնական նիրհից արթնացնելը: Ստեղծվում էին հակակրոնական զանազան խմբակներ, քաղդպրոցների պարապմունքների ժամանակ ցույց էին տրվում կրոնի հակագիտական, ռեակցիոն էությունը: Բացատրական տևական աշխատանքի շնորհիվ բացահայտվում ու վերացվում էին աղանդավորական զանազան խմբակները, որոնք ջանում էին իրենց շուրջը համախմբել բանվորական ու գյուղացիական հետամնաց տարրերին: Կրոնական մնացուկների դեմ մղվող գաղափարական ճիշտ ու հետևողական պայքարը տվեց իր դրական արդյունքը: Կուսակցության գլխավորությամբ կոմերիտմիությունը այս կարևոր գործում ևս հաղթանակի հասավ:

Այսպիսով, հեղինակը շնորհակալ գործ է կատարել՝ հարստացնելով պատմա-կուսակցական գրականության՝ կոմերիտմիության պատմությանը նվիրված բաժինը:

**Ս. Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

*Հայաստանի կոմերիտմիության*
*պատմության պետական*
*թանգարանի դիրեկտոր*


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)

Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի բաժին և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—0—64:

*ՎՖ 03695 Պատվեր 1884 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.000 Գինը 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 29/IX-1976 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԹԵՎԱՆՅԱՆ— Հայ թատերական միտքը 19-րդ դարում: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Ս. ՌԻԶԱԵՎ— Անդրկովկասի ժողովուրդների արվեստների փոխհարստացումը: *Ե. ԳԱ հրատ., 1976:*

Տ. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ— ՍՄԿԿ-ն երկրի համատարած էլեկտրիֆիկացման համար մղվող պայքարում: *«Հայաստան» հրատ., 1976:*

Հայկական համաբարբառ: Ալետիք Խաճակյան: *Հ. 1, Ե. ԳԱ հրատ., 1976:*

Ա. ՄԻՆԱՍՅԱՆ, Հ. ՎԱՐԴԱՆՈՎ— Հայգյուղմեքենատեխնիկա հանրապետական միավորման ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի փորձը: *Ե., «Հայգյուղտեխնիկա» հանրապետ. միավոր. հրատ., 1976:*

Հայաստանի գյուղատնտեսական կուլտուրաների, անտառների և պահեստների վնասատուները: *Ե. ԳԱ հրատ., 1976:*

Զ. ՂԱԶԱՐՅԱՆ— Բարոյական սկզբունքները «Սասունցի Դավիթ» էպոսում: *«Հայաստան» հրատ., 1976:*

Գ. ԲԱԲՈՅԱՆ— Դժոխքի ուղեգիրը: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Դյուցազունները չեն մոռացվում: *«Հայաստան» հրատ., 1976:*

**Ф. ЭНГЕЛЬС — К истории первоначального христианства.** М., Политиздат, 1976.

**В. ЛЕНИН — Уроки Коммуны. — Памяти Коммуны.** М., Политиздат, 1976.

**В. ЛЕНИН — Социалистическое отечество в опасности! — Тяжелый, но необходимый урок. — На деловую почву. — Серьезный урок и серьезная ответственность.** М., Политиздат, 1976.

**Философия и современность.** Сборник статей. Изд. «Наука», 1976.

**И. УСАЧЕВ — Советский Союз и проблема разоружения.** Изд. «Межд. отнош.», 1976.

**Ю. КРАСНОВ — От конфронтации к сотрудничеству.** Изд. «Межд. отнош.», 1976.

**Б. ЛЕВЕ — Классовая борьба или социальный конфликт?** Перевод с немецкого. Изд. «Прогресс», 1976.

**Р. ПЛАТОНОВ — В поисках высокой действенности.** (Политическая пропаганда и атеистическое воспитание). М., Политиздат, 1976.

**Т. ДОНГАРОВА — Чрезвычайные органы партии** (О политотделах МТС). М., Политиздат, 1976.

**Н. ВАРЗИН — Интеграция и рост производительности труда в странах СЭВ.** Изд. «Экономика», 1976.

**США: Организационные проблемы управления.** Изд. «Мысль», 1976.

ԳԻՆԸ՝ 20 Կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆԿԱՐԱՀԱՆՈՒՄ Է ՄԻԿՐՈԻՆՔՆԱԹԻՌԸ

*Կուրսկի Վ. Վ. Ալյոխինի անվան կենտրոնական սևահողային արգելանոցի տափաստանային տեղամասի վրայով իրար հետևից թռչում են ինքնասլաց, կարմրաթև ինքնաթիռները... Օդաչուները գետնին են: Ղեկանիվն ու կառավարման փոքրաչափ վահանակը— թռիչքավարի մոտ են: Ըստ ռադիոհրամանի մեքենաները բարձրանում են, միացնում սարքերը և սկսում են նկարահանել...*

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի աշխարհագրության ինստիտուտում առաջին անգամ անցկացվում են հետազոտություններ՝ անօդաչու թռչող լաբորատորիաների օգնությամբ: Դրանք ավելի ճիշտ միկրոլաբորատորիաներ են, քանի որ յուրաքանչյուրն ընդամենը մոտ յոթ կիլոգրամ է, իսկ թևերի բացվածքը՝ երեք մետր: Դրանք պատրաստվել են Չեխոսլովակիայում և առաջին թռիչքները կուրսկյան տափաստանում անցկացվել են չեխ մասնագետների հետ: Ավիամոդելների ռադիոկառավարման օգնությամբ կատարվող նկարահանումները բնական պաշարների ուսումնասիրության կարևոր միջոցներից են:*

## ՄԵՔԵՆԱՅԻ ՀԵՏԵՎԻՑ՝ ՊԱՏՐԱՍՏԻ ՃԱՆԱՊԱՐՀ

*Ամերիկյան կոնստրուկտորները ավտոմայրուղու շինարարության համար մշակել են «Ավտոուղեհարթիչ» ասֆալտապատման մեքենայի կոմպլեքս: Այն կարող է 15 մետր լայնությամբ հարթել ճանապարհը և կատարել ճանապարհաշինության բոլոր պրոցեսները. հողե հիմքի պատրաստումից մինչև ասֆալտի հարթումը կամ բետոնապատումը: Կոմպլեքսը բաղկացած է չորս հիմնական և մի քանի օժանդակ սարքերից, որոնք հագեցված են կառավարման ու հարթաչափման էլեկտրոնային սիստեմով. այն թույլ է տալիս մաքսիմում 2,5—3 մմ անճշտություն: Կոմպլեքսի բոլոր մեքենաները միանման են, դրանց կառավարումն ամբողջովին մեքենայացված է: «Ավտոուղեհարթիչ» մեքենայի արտադրողականությունը հասնում է օրական 1—3 կիլոմետր հարթ ճանապարհի: Ինչպես վկայում են մասնագետները, այս համակարգը հեղաշրջում է մտցրել համաշխարհային ճանապարհաշինության բնագավառում:*

## ԱՂՄՈՒԿԱԿԼԱՆԻՉ ՄԱՍՏԻԿԱ

*Գորկու ինժեներա-շինարարական ինստիտուտի գիտաշխատողները պոլիվինիլացետատ դիսպերսիայի հիման վրա պատրաստել են աղմուկակլանիչ մաստիկա: Դրանով ներկում են օդափոխիչ տուփը, և աղմուկը դադարում է:*

*Աղմուկակլանիչ այդ մաստիկան թունավոր չէ, կայուն է ներկի և բենզինի նկատմամբ և ունի հաճելի բաց-կանաչավուն գույն: Այն քսում են օդափոխիչների, օդամուղների մետաղական տուփերին, տարբեր մեխանիզմների պատյաններին և «աղմկոտ» մետաղատարաների:*

## «ՏՐԱԿԻԱ»

*Բուլղարիայի Պլովդիվի բանջարանոցային կուլտուրաների ինստիտուտը մշակել է ագրո-արդյունաբերական մի շարք մեքենաների կոմպլեքս:*

*Ինքնագնաց կոմբայնը մեկ ժամում հավաքում է 10 տոննա պղպեղ: Բավական է փոխել դրա կախովի սարքը և այն կփոխարկվի լոբահավաք կոմբայնի: Վերջերս պատրաստված առաջին կախովի սրսկիչով ժամում կարելի է մշակել 3—4 հեկտար խաղողի այգի կամ ծխախոտի պլանտացիա:*

## ՄԵՏԱՂԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Զագորսկու լաքուներկի գործարանում սկսվել է պաշտպանական նոր էմալի մասսայական թողարկումը, որը մշակել են լաքի ու ներկի արդյունաբերության պետական գիտահետազոտական և նախագծային ինստիտուտում: Այն լինում է փայլուն և անփայլ: Այդ էմալով պատված իրերը լավ են դիմանում անձրևին և արևին: Նորույթը լայնորեն կօգտագործվի շինարարական կառուցվածքների ներկման նպատակով:*